# ԲՆԱԲԱՆՈՒԹԻՒՆ ԻՄԱՍՏԱՍԻՐԱԿԱՆ:

Կամ:

## ՏԱՐԵՐԱԲԱՆՈՒԹԻՒՆ:

Որ է բան:

Յաղագս Տարերաց՝ և Տարերական որակութեանց, Խառնուածոյ՝ և Վերամբարձ զբօսանացն. ուստի՝ գոյանայ ամպն՝ մրայլն՝ ցօղն՝ եղեամն՝ անձրևն՝ ձիւնն, կարկուտն՝ փայլատակն՝ կայծակն, գետնաշարժն՝ հողմն՝ աղեղն, և այլ սոյնպիսի Վերամբարձ զբօսանք:

Յօրինեալ 'ի Մագիստրոսէ և 'ի Պօղոսէ յ'Աղբերտոյ Սաքսոնեան Պոպերոյ:

'Ի դէպս Մկրտչեայ Բանասէր Եղբօրց:

Տպիւք՝ և ծախիւք Թովմայ Եռամեծ Րաբունւոյ, և Արքեպիսկոպոսի Վանանդեցւոյ:

'Ի Հայրապետութեան Լուսահեղոյս Աթոռոյն՝ Սրբոյ Էջմիածնի, Տն Նահապետի:

Յամի Տեառն. 1702:

---

ՅԱՄՍՏԷՐԴԱՄ:

## Ո՞Վ ԷՐԷ ՓԻԼԻՍՈՓԱՅ. ԶԻ՞ՆՉ Է ՔԱՆԱԿԱՊԷՆ ԷՐԷ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹԵԱՆ։

Որք ՚ի վաղ ժամանակին ընդհանուր ներհմտութբ, ներհուն մակացութբ, և քաջավարժ գիտութբ գերազանց քան զայլս երևէին· ,սոփոս ձայնիւր. որ է գիտուն՝ և իմաստուն։

Բայց՝ Պիւթագոր յիւրում ժամանակի զայնպիսի պանծալի, փքալի, և յոգունց ամենլի անունն Սոփոս՝ փոխարկեաց ՚ի յայլ մի ս տենչալի, և ՚ի բազմաց մեծարելի անուն, այսինքն՝ , Փիլոսոփոս, որ է իմաստասէր. որ՝ գիտութե և իմաստութեան սիրող։

Որդ՝ ամենայնոք, որ է բուն վարժ, ներկուռ հմտացեալ՝ և կրթեցեալ ՚ի սահմանս՝ և ՚ի շրջակայութիւնս էակաց, ըստ որում էակք են. այսինքն՝ պատճառաւն հանդերձ, Վասն է՛ր, և Վասն զի. նա ասի Փիլոսոփոս՝ և Իմաստասէր։

Ապրեմն՝ Փիլիսոփայութի՝ կամ Փիլոսոփութի՝ և իմաստասիրութիւն է գիտութիւն էակաց. հանդերձ պատճառաւն, ըստ՝ գիտութիւն Վասն է՛ր Պատճառին, և Վասն զի Պատճառին. որ լուսանալի է մեծագոյն իմաստութբ, անձանձիր աշխատանօք, և խորախոհ մտօք։

Փիլիսոփայութիւն՝ կամ Փիլոսոփութիւն եռամասնեայ է. Տրամաբանական, Բարոյական, և Բնական.

### Զոր այսպէս ցուցանեմք։

Ամենայն Փիլոսոփութի, կամ Իմաստասիրութիւն ուղևորէ առ մարդկային երանութիւնն։ Իսկ մարդկային երանութիւնն, և երջանկութիւնն (ըստ Սրբոյն Օգոստինոսի.) մասամբ իմիք կայանայ ՚ի յառաքինութեան յարմար

գործս

գործս. և մասամբ իմիք 'ի յանձն յօրինել զճշմարտութիւն, և զգաղտնիս բնութեան։ Բարոյական Փիլիսոփայութիւնն նկատէ զառաքինութեան յարմար գործս։ Բնական փիլիսոփայութիւնն ակնարկէ, և որոնէ զճշմարտութիւնն, և զգաղտնիս բնութեան։

Առ այսոսիկ՝ պիտանացու է գործել ինչ, որով նշմարի առաքինութիւնն 'ի մոլութենէն, լոյսն 'ի վառէն. նաև՝ ճշմարտութիւնն 'ի ստութենէն, և կարծիքն 'ի հաւաստութենէն. և զայս պաշտօն ունի Տրամաբանականն։ Որպէս՝ եռամասնեայ է փիլիսոփայութիւնն. Տրամաբանական, Բնական, և Բարոյական։

Երկրորդ՝ Ամենախնամն, որ զերիս կատարելութիւնս ունի. Բարութիւն, Գիտութի, և Կարողութի. արար զմարդն ըստ պատկերի իւրում, և ըստ նմանութե. Ծնն. I, 26։ Որպէս՝ Մարդն պարտի նմանիլ ԱՅ՝ ըստ նմանութեան, և կարողութէ իւրում, և նման նմա լինել. Բարի՝ Բարոյականաւն։ Գիտուն՝ Բնականաւն, և Կարող՝ Տրամաբանականաւն։

Երրորդ՝ Մարդկային իմացողութիւնն՝ ըստ օրինակի իմանալի Սրբասպետութեանցն, պարտի Մաքրիլ. Լուսաւորիլ. և Կատարանալ։

Առ մաքրութիւն մարդկային մտաց պիտանանայ Բարոյականն։

Առ լուսաւորութիւն՝ Տրամաբանականն։

Իսկ առ Կատարելութիւնն պիտոյանայ Բնական Փիլիսոփայութիւնն։

Այսպէս՝ կերպիւ իմիք երգակցել ըստ Մարգարէին, և ասել. Ած Զօրութեց, դարձո՛ զմեզ. Բարոյականաւ փիլիսոփայութեամբն. Երևեցո՛ զերեսս քո 'ի մեզ. Տրամաբանական փիլիսոփայութբն. և կեցցուք.

Բնա

Բնական փիլիսոփայութեն։ Սաղմոս, 79։ յԱսացելոցս յայտնապէս երևի, զի իմաս-տասիրութիւնն ընդհանրօրէն իմացեալ բնաւորեցաւ պատշաճօրէն յերիս տրամա-սիլ. այսինքն՝ 'ի Տրամաբանական, Բա-րոյական, և 'ի Բնական իմաստասիրութեն։ Բայց՝ առանձին նմ իմաստասիրութիւն կարէ ստորաբաժանիլ յայլ գլխաւոր մա-սունս. ոպ՝ Բնականն ստորաբաժանի 'ի Բնաբանական, 'ի Գերբնական՝ և յՈւ-սումնական իմաստասիրութի։ Ըստ այսմ տարասի՝ և այլ Փիլիսոփայութիւնք առանձ-նացեալք յայլ մասունս ստորաբաժանին։

## Համառօտ Պատմութիւն վասն Արիստոտէլի եւ իւր Գրեանցն։

Սեհաբանն Արիստոտէլ, որ էր Պղա-տոնի՝ և Սոկրատի աշակերտ. մեծի Աղեկսանդրի Դաստիարակ՝ և Վար-ժապետ. յԱմի ստեղծագործութե-աշ-խարհի 3645, յարահուն մտօքն յաղթեալ Հնոցն ամենեցուն՝ գրեաց նրբապէս զԱշխար պատէն՝ և զԲնալօղական Գրեանս։

Ջարտաքին ուսմունս նոյնինքն Արիստո-տէլ յերեկոյի ժամուն, 'ի դրան Ճեմա-րանին, ճառէր աշակերտացն դիւրիմաց՝ և գրեթէ հասարակ ոճիւ, զոր իւրաքան-չիւր առանձնանի Ունկնդիր պարզապէս 'ի միտ առնոյր. որպիսիք են՝ Քերականն, Տնօրինականն, Քաղաքականն, Բանա-ստեղծականն, և Յաղագս Բնութեան կենդանեաց։

Իսկ՝ զԲնալօսղական ուսմունս ընդ Ճե-մարանում բացատրէր աշակերտացն դը-ժուարիմաց՝ և գրեթէ անըմբռնելի ոճիւ, որ մեծի ունկնդրութեան, խուզութեան, և նրբութեան պէտս ունէր. որպիսիք են՝ Լօջի-կայն, որ է՝ Տրամաբանականն։ Ֆիզիկայն

որ

որ է՝ Բնաբանականն։ Մետաֆիզիկայն, որ է՝ Գերբնականն։ Մաթեմատիկայն, որ է՝ Ուսումնականն։ Գիրք յաղագս երկնից, և աշխարհի։ Յաղագս լինելութեան՝ և ծննդեան։ Յաղագս Վերամբարձ Զբօսանացն, և բազմազան՝ և խորին իրող ղութիւնք։

Սիրող փիլիսոփութեան, և իմաստասիրութեան տենչեալ բանից. լիցի վերահասու տառն Ստորոգութեանց Արիստոտելի. այս ինքն, թէ՝ զի՞նչ իցէ Գոյացութի. Քանակութի. Որակութիւն. Առնչութիւն. Առնել. Կրել. Ո՛ւր. Ե՛րբ. Կալ. և Ունիլ. Եւս վերահասու լիցի Հինգ Ստորոգելեացն Պորփիւրի, թէ՝ զի՞նչ իցէ Սեռ. Տեսակ. Տարբերութի. Յատուկ, և Պատահումն. Նաև՝ մի՛շտ՝ և յամենայնուրեք զմտաւածիցէ զեօթնադրուլսն Պարագայս. Եթէ է՞. Զի՞նչ է. Որպիսի՞ ինչ է. Որպէ՞ս է. Ո՞վ է. Վասնէ՞ր է. Ե՞րբ է։ Ապա թէ՝ ծայրիւ մատին առցէ զճաշակ ինչ ուսմանս։

դէն. Տր̅՝ և Իշխան աշխարհի. յ՚սկզբանէ ստեղծ զառաջին նիւթն, և զայլ նիւթաւոր էակս, և զչորս տարերս՝ հանդերձ ծծմբաղանդիկ սկզբնատարերամբքն. ուստի պատճառի նմ̅ եղա՛կան փոփոխումն, յեղումն, խառնումն, և խառնուած:

Չորք տարերքս այսոքիկ տարեալք 'ի միմեանս՝ և յածեալք առ իրեարս, ընդ նմ̅ տեղիս՝ և ընդ արարածս զատանին. ուստի կոչի Տարր, ըմ̅՝ փարած, ոճէլա, ջըէ, կամ՝ ջէրեցան:

Տարր է՝ մարմին սոսկ, անբաժանելի յ՚այլ տարազգի մարմինս. բայց այլ նմ̅ մարմին 'ի տարերէ հաստատի, և 'ի տարրլուծանի:

Տարերք թէպէտ են չորք. Հող, Ջուր, Օդ՝ և Հուր:

Զօրրորդութիւն տարերաց կարճ 'ի կարճոյ այսպէս ցուցանի:

I Չորք

1 Չորք են առաջին՝ և շօշափելի
որակութիւնքն. և չորք ծնորդու-
թիւնք՝ կամ ազգականութիւնք
որակութեանցն 'ի տարերս:
Ջերմութիւն, Ցրտութիւն, Գի-
ջութիւն՝ և Չորութիւն են չորք
առաջին՝ և շօշափելի որակութիւնքն:
Չորութիւն՝ և Ցրտութիւն ծնոր-
դին 'ի Հողն:
Ցրտութիւն՝ և Գիջութիւն ծնոր-
դին 'ի Ջուրն:
Այս երկու տարերքս գիջութեամբ՝
և չորութեամբ են անհաշտելի
թշնամիք. իսկ Ցրտութեամբն
անխզելի հաշտութեամբ ընդ-
միմեանս միաւորին:
Գիջութիւն՝ և Ջերմութիւն
ծնորդին 'ի յ'Օդն:
Ջերմութիւն՝ և Չորութիւն
ծնորդին 'ի Հուրն:
Այս երկու տարերքս չորութեամբ
են անհաշտելի թշնամիք. իսկ՝
ջերմութեամբն են անքակտելի
սիրելիք:
Նոյնպէս՝ Հողն չորութեամբ ընդ
Հրոյ կապի. ցրտութեամբն ընդ Ջրոյ:
Ջուրն՝ ցրտութեամբ ընդ Հողոյ միա-

բա

բանի. խոնարհութիւն է Օդոյ:
Օդն՝ խոնարհութիւն ընդ Ջրոյ
հաշտի. ջերմութիւն ընդ Հրոյ:
Հուրն՝ ջերմութեամբ է օդոյ
լծակցի. չորութիւն ընդ հողոյ:
Ուրեմն՝ չորք են տարերքն ըստ
չորրորդութեն առաջին՝ և շօշա
փելի որակութեանցն:

2. Ցուցանի չորրորդութի տարե
րաց 'ի չորից շարժից զօրութեց.
այսինքն՝ 'ի թեթեւութենէ բոլո
րապէս, և 'ի թեթեւութէ մաս
նապէս. 'ի ծանրութէ բոլորա
պէս՝ և 'ի ծանրութէ մասնապէս:
Թեթեւութի բոլորապէս 'ի վեր
շարժի մինչև 'ի թեթեւութեան
միջակէտն. ոպ՝ Հրոյ թեթեւութին:
Թեթեւութի մասնապէս 'ի վեր
շարժի դէպ 'ի թեթեւութեան
միջակէտն. որպէս՝ Օդոյ թե
թեւութիւնն:
Ծանրութի բոլորապէս 'ի վայր
շարժի մինչև 'ի միջակէտն ծան
րութե. ոպ՝ Հողոյ ծանրութին:
Ծանրութի մասնապէս՝ և բա
երեք 'ի վայր շարժի դէպ 'ի ծան
րութեան միջակէտն. որպէս Ջրոյ
ծանրութին: Աւ

Աւրեմն՝ չորք են տարերք՝ բստ
չորրորդութեան չորից շարժից
զօրութեանց ։

3. Բստ սորայն Ճերանխմասի՝ չորք
տարերք ցուցանին՝ և նշանակին
յԱճաշունչ Ս. Գիրս բազում
վկայութեամբ. նաև՝ 'ի զանազան՝
և գոյնզգոյն հանդերձից Ահա-
հանսյապետին. այսինքն 'ի կա
պուտակէ, 'ի Ծիրանւոյ 'ի կար-
մրոյ, և'ի Բեհեզոյ. Ելից 28 ։
Ո՛ր 'ի կապուտակն՝ ունի զգոյն
Օդոյն ։ Ծիրանին է 'ի Ծովոյ
ին տաշտկայ, որ է ջրային ։ Կար
միրն է նման Հրոյն ։ և Բեհեզն
'ի Հողոյն յառաջգայ ։

Աւրեմն՝ և այլ ։

4 Կամարք երկնայինք ցուցանեն
զչորրորդութիւն Տարերաց. զի
Արեգակն՝ և Հրատն են Հրայ
ինք ։ Երևակն՝ Հողային ։ Լուսն
թագն օդային ։ Փայլածուն՝
Ջրային ։ Այլ իմնապէս. Լու-
սինն՝ է Հողային. Փայլածուն՝
Արեգակն՝ Հրային ։
Ջրային. Լուսաբերն՝ Օդային.
Կարճեալ՝ Հրատն՝ Հրային.

Լուսն

Լուսնթագն՝ Օդային. Երեւակն՝ Ջրային. Լուսաղթափուր Կամարն՝ Հողային։

Ուրեմն՝ և այլ։

5 Չորք կողմունք աշխարհի. չորք եղանակք տարւոյն. չորք հեղուկք կենդանեաց։ չորք հասակք մարդոյն. չորք որակութիք երկոտասան կենդանակերպիցն. չորք ձայնք. չորք համք. չորք գոյնք ցուցանեն չորրորդութի տարբերաց՝ այսպէս։

Հիւսիսային կողմն. աշնան եղանակն. սև մաղձն. ծերութեան հասակն. ցուլ՝ կոյս, այծեղջիւր կենդանակերպն. ծանր ձայնն. թթու համն, և սեաւ գոյնն ցուցանեն զհողն։

Արեւելեան կողմն. ձմեռն. մաղասն. ալևորութիւնն. խեցգետին՝ կարիճ, և ձուկն կենդանակերպն. սուր ձայնն. աղի համն, և սպիտակ գոյնն ցուցանեն զջուրն։

Հարաւային կողմն. գարունն. արիւնն. տղայութիւնն. երկաւոր՝ կշիռ՝ և ջրհոս կենդանակերպն. երկար ձայնն. քաղցր համն

համն, և կարմիր գոյնն ցուցա
նեն զօդն:

Արևմտեան կողմն . ամառն . խառ
նեալ մաղձ . երիտասարդութիւն .
խոյ՝ առիւծ՝ և աղեղնաւոր կեն
դանակերպն . սուր ձայնն . դառն
համն, և դեղին գոյն ցուցանեն
զհուրն:

Ուրեմն չորք են տարերքն . ոչ
աճելի՝ և ոչ պակաս . որք են
Հող, Ջուր, Օդ՝ և Հուր:

Հողն է տարր՝ չոր, ցուրտ, և
քան զջուրն ծանրագոյն . ի-
գական . կրօղ՝ և ընդունող ազդ-
մանց . թուլթ, խիտ, և կայուն .
առիթ սևմաղձի, ծանր ձայնի,
թթու համոյ, և սևաւ գունոյ .
աշնանային . անշարժ . միջակէտ
աշխարհի . բնակարան կենդա
նեաց, ամբար հանքոյ՝ և հրահա
լելեաց . ծնունդ բուսոց . սնունդ՝
և տուն մարդոյ:

Մարդանմանն է . զի ունի զերակս
ջրոց, զշնչերակս օդոց, զոսկերս
քարանց՝ և լերանց, զծուծս կըղ
րաձիւթից, և զվարսս մայրեաց:

Ջուրն է տարր՝ ցրտագոյն քան
զհող

զՀող. թոյլ՝ և խոնաւ քան զօդ. ծանրագոյն քան զՀուր՝ և զօդ. իգական. կրող՝ և ընդունող ազդմանց. բնութ., խիտ՝ և շարժուն. առիթ մաղասի, սուղ ձայնի. աղի համոյ, սպիտակ գունոյ՝ և ձմեռան եղանակին։

Օդն է տարր՝ խոնաւագոյն քան զջուր. թեթևագոյն քան զՀող՝ և զջուր. ծանրագոյն՝ և թոյլ ջերմ քան զՀուր. արական. գործունեայ՝ և ազդու. բնութ., անգոյն՝ և շարժուն. առիթ արեան, երկար ձայնի, քաղցր համոյ, կարմիր գունոյ՝ և գարնան եղանակին. վերամբարձ զբօսանացն շտեմարան. թևաւոր բնութեանց կառ. Հողմոց նաւարան. ժամանակաց բարեխառնութիւն. շնչոց տուր՝ և առութի. կենդանեաց զօրութի. կերպաւորիչ տեսութեան աչաց, լոյս ականջաց, ձայնի բերանոյ՝ և այլ ամ ձայնատու արձագանգաց. յորում է լոյսն, լուսատուն՝ և լուսառուն։

Օդն վերին կայանս ունի. վերին, որ է սաստիկ ջերմ. միջին,

որ է յոյժ ցուրտ. Ներքին, որ է
մեղմ, թոյլ՝ և միջակ ջերմ։
Հուրն է տաք՝ ջերմ, չոր՝ և թե-
թևագոյն քան զօդ. արական,
գործունեայ՝ և ազդու. սուր. ան-
գայտ՝ և շարժուն, առինթ խառ-
նեալ մաղձի, սուր ձայնի, դառն
համոյ, դեղին գունոյ՝ և ամա-
ռան եղանակին. պատուականա-
գոյն քան զայլ երիս տարերս, զի
գերազանց որակութիւն՝ և վեր
նագոյն տեղի ունի 'ի վերայ այլ
տարերայն. բարեխառնէ զցըր-
տութիւն հողոյն՝ և ջրոյն։

Հողոյ ներքին ծայրն է չոր.
վերինն ցուրտ։

Ջրոյ ներքին ծայրն է ցուրտ.
վերինն խոնաւ։

Օդոյ ներքին ծայրն է խոնաւ.
վերինն՝ ջերմ։

Հրոյ ներքինն ծայրն է ջերմ.
վերինն չոր։

Հողն է սաստիկ չոր. թոյլ
ցուրտ։

Ջուրն՝ սաստիկ ցուրտ. թոյլ տա-
մուկ՝ կամ խոնաւ, և դէջ։

Օդն՝ սաստիկ խոնաւ, թոյլ
ջերմ։

Հուրն՝ տաքագոյն ջերմ. Թայց չոր։

Տարերք ուրեմն են լծորդք, ազգականք՝ և սիրելիք. կամ, անլծորդք, տարազգիք՝ և թշնամիք։ Ազգականք, և լծորդք են՝ հուրն՝ և օդն ջերմութ՟բ. օդն՝ և ջուրն խոնաւութ՟բ. ջուրն՝ և հողն ցրտութ՟բ. հողն՝ և հուրն չորութ՟բ։ Տարազգի՝ և անլծորդ տարերք են՝ հուրն, և ջուրն. հողն՝ և օդն։

### Փոխարկումն Տարերաց 'ի միմեանս։

Տարերք ազգականն՝ և լծորդ որակութ՟բ դիւրաւ տարրին, և փոխարկին յ'իրեարս, քանթէ՝ տարազգի, և անլծորդ որակութ՟բն։ Քանզի հողն՝ ցրտութ՟բ տղմացեալ՝ դիւրաւ 'ի ջուր փոխարկի. չորութ՟բ եռացեալ՝ և բորբոքեցեալ՝ դիւրաւ 'ի հուր փոխի։ Հուրն՝ ցրտութ՟բ թանձրացեալ՝ խտացեալ, և կաւացեալ դառնայ հող. իսկ խոնաւութ՟բն տապացեալ՝ և շոգացեալ լինի օդ։ Օդն՝ խոնաւութեամբն թանձրացեալ՝ 'ի ջուր փոխարկի. իսկ ջերմութեամբն չորացեալ՝ և

ջե

ջեռուցեալ՝ լինի հուր։

Հուրն՝ շիջուցեալ՝ և տամկացեալ՝ փոխարկի, և լինի օդ։

Գլուխ Երկրորդ։

## Յաղագս Որակութեանց։

Որակութիւն է ընդարձակ պատահումն, ստեղծեալ գոյացութեանն սակս իւրոյ կատարելութեանն. թէ յ'իրակելն, թէ 'ի կրելն, և թէ 'ի գոյանալն. կցորդեալ։

Են Առաջին, Երկրորդ՝ և Գաղտնի որակութիւնք։

Առաջին որակութիւնքն են չորք. ջերմութիւն, գիջութիւն, ցրտութիւն՝ և չորութիւն։

Ջերմութիւն է առաջին՝ և շօշափելի որակութիւն. արարող՝ կամ գործունեայ. զհամասեռս՝ կամ զնմանամասնեայս 'ի մի ժողովող և զայլասեռս՝ կամ զայլմասնեայս որոշող՝ և ուրոյն կացուցանող. ոմն՝ հրոյ ջերմութիւնն որ զոսկէխառն հրահալելիսն հալելովն նօսրացուցանէ՝ և զոսկին 'ի մի ժողովէ՝ ուրոյն կացուցանելով զայլ

լա

լատեսակ հրահալելիս, այսինքն
զարծաթն՝ զերկաթն՝ զարճիճըն
և զայլ որիշ հրահալելիս ։

Գիջութիւն՝ որև տամկութիւն
և խոնաւութիւն ասի՝ է առաջին
շօշափելի, և կրօղ որակութիւն.
որով մարմին ինչ իւրովեզերըն
և իւրով սահմանաւն դժուարաւ
եզերի՝ և սահմանի, իսկ՝ օտար
սահմանադրութեամբըն՝ դիւրաւ
պարփակի, և պարունակի. որ
պէս ջուրըն, և այլ ոմ հոսանուտ
և հեղանուտ ծորան ։

Ցրտութիւն է առաջին՝ շօշափե
լի, և արարօղ որակութիւն, որ
խիտ՝ խուռն, և թանձր առնէ
զհոմասեռս, 'ի մի ժողովելով զնը
մանամասնեայս՝ և զտարազգիս.
որպէս՝ պաղն՝ և սառն 'ի ցրտու
թենէ թանձրացեալ՝ 'ի մի ժողո
վի քարիւ՝ փայտիւ՝ և այլ ինչ տա
րազգի մարմնով ։

Չորութիւն է առաջին՝ շօշափե
լի՝ և կրօղ որակութիւն, որով
մարմին ինչ դիւրաւ պարունակի
և պարագրի եզերաւն՝ և սահմա
նադրութեամբն իւրով, իսկ դը
ժու

ծուարաւ անդաւորի օտար սահմանաւ՝ և եզերաւ․ որպէս քարն ոսկրն՝ փայտն, և այլ սոցին նման ջուր՝ և կոշտ մարմինք ։

Երկրորդ որակութիւնքն յառաջնան՝ և ծնանին յառաջին որակութեանցն, և են շօշափելիք՝ և ենթակայք զգայարանացն ։ 'Ի ջերմութենէն յառաջանան անդայսութիւն, և թեթևութիւն ։

Անդայսութիւն, կամ նօսրութիւն ունի զդրութիւն մասնկանց նօսր մարմնոյն՝ տարակացեալ, և 'ի միմեանց հեռացեալ ։

Թեթևութիւն է որով մարմին ինչ բնաւորեալ բնութեամբն դիւրաւ 'ի վեր շարժի ։

Կրկին գոյ թեթևութիւն, բոլորապէս՝ և մասնաւորապէս ։

Թեթևութիւն բոլորապէս 'ի վեր շարժի մինչև 'ի թեթևութեան միջակէտն․ որպէս հրոյ թեթևութիւնն ։ Իսկ՝ թեթևութիւն մասնաւորապէս՝ և ըստ մասին 'ի վեր շարժի միայն դէպ 'ի թեթևութեան միջակէտն․ որպէս օդոյ թեթևութիւնն ։

'Ի գիջութենէն յառաջանան ողորկութիւն, կակղութիւն, սողոսկութիւն, նրբութիւն, և կպչութիւն ։

Ողորկութիւն՝ կամ կոկութիւն ունի զուղիղ համաչէտ, և դիւրաշօշափ երեսս 'ի մարմնի ։

Կակղութիւն ունի մեղմ, և թոյլ մասունս, որք շօշափողաց դիւրաւ տեղի տան ։

Սողոսկութիւն (որ և՝ սահեցողութիւն՝ սպրդնութիւն՝ ոփսատութիւն՝ ըղըղութիւն՝ ըղրփութիւն և ըղրծութիւն կոչի ասին ։) ունի դիւրասահ հասանուած՝ և շօշափամուղ մասնկունս ։

Նրբութիւն ունի զատուկ՝ և զլոկ մասնիկս ։

Կպչութիւն (որ և խծծութիւն՝ և ծղլնութիւն կո-

չի

օդն, և ջուրն. Ստուերամած մարմինք են՝ լուսինն, հողն՝ և ամպն ։

Լուսաւոր մարմինն ոչ ուրեք, և ոչ երբեք մըթնանայ. Թափանցիկն՝ ոչ լուսաւոր է և ոչ խաւարական. այլ է ընդունակ երկաքանչիւրոյն. որոց է անընդունակ Ստուերամածն, որ հակակայ է լուսաւոր մարմնոյն ։

Լոյս ուրեմն է որակութիւն լուսաւոր մարմնոյն, որով ասի լուսաւոր՝ լուսատու, և ազդու ։

Գոյն է շարժական այնր, որ ներգործութեամբ թափանցիկէ. և այս ըստ բնաւորեալ բնութեանն ։

Տեսակ երևելի գունոցն են հինգ այսինքն, Սպիտակ. Դեղին. Կարմիր. Կապոյտ, և Սեւ ։

Դասցանէ յառաջագոյին այլ ևս գոյնք՝ ըստ որում տեսանի ըն հետևեալ քըշուածոյս. յորում Ուննդական մտաւորն զյոլով խորին զաղտնիս ուսանի ։

## Լծորդութիւն Գլխաւոր գունոյն ։

Սպիտակ գոյնն ընդ սևոյն՝ լինի մոխրաշաղ ։
ընդ դեղնոյն՝ լինի դեղնաշորթ ։
ընդ կարմրոյ՝ լինի գոյն որդան ։
ընդ կապուտոյն՝ մոխրագոյն ։
Դեղին գոյնն ընդ կարմրոյ՝ լինի ոսկեգոյն ։
ընդ կապուտոյն՝ լինի կանաչ ։
ընդ սևոյն դառնայ թուխ ։
Կարմիր գոյնն ընդ կապուտոյն լինի ծիրանի ։
ընդ սևոյն՝ թուխ կարմիր ։

Կա

Կապոյտն է սևոյ՝ լինի թուխ կապոյտ :
Աշխարհք գոյնին ըստ ընդդիմութեան գունոյն :

Առ հինգ քրիստալեայ բոլորշի ապակի՝ այլևայլ գունով գունաւորեալ. մինն սպիտակ. միւսն դեղին. մինն կարմիր. չորրորդն կապոյտ. վերջինն սևաւ :

Եթէ յարևու ժամանակին կալցես թղթով զ շողարևու յերից կամ յերկուց, կամ Ը հանձոյից՝ յորքանից և իցէ՝ քրիստալեայ՝ և բոլորշի ապակեացն փայլուստ 'ի վեր միմեանց ուղղակի հանդէպ և կից եդելոյն. գտցես զարմանալի գաղտնիս, և արհեստս :

Զայն է կրող որակութիւն յօդս կամ 'ի ջուրս, շարժեալ 'ի բախմանէ երկու կարծր մարմնոյ՝ և 'ի խորտակմանէ միջոցին :

Կլան ձայնից ( Եթէ [illegible] կանոնքն : ) յայլում դիպող ժամանակի :

Համն է 'ի ջրային խոնաւութէ եղեալ 'ի հողային չորութենէ՝ և եփեալ 'ի ջերմութենէ :

Տեսակք համոյ են՝ քաղցր. գէր. բարկ. փոթոթ. կծու. դառն. թթու, և աղի :

Հոտն է երկրորդ որակութիւն՝ յառաջեկեալ 'ի ջերմութէ, և 'ի չորութէ :

Երրորդ

## Գլուխ Երրորդ։

### Յաղագս Վերամբարձ գոլոշեացն. և գոլոշեայ մասնկանց։

Վերամբարձ գոլոշին է անկատար՝ և Թէրի խառնուած, որ 'ի չորից տարերաց՝ մանաւանդ 'ի հողոյ, և 'ի ջրոյ' գոյանայ. բայց՝ ջերմութ̅ արեգական, և զօրութ̅ աստեղաց 'ի կայանս օդոյն վերամբառնայ. ուստի ասի Վերամբարձ. զի այնպիսի Թերի խառնուած 'ի տարերաց՝ ամբառնայ 'ի վեր։

Երկին գոյ գոլոշի. օդային՝ և հրոյին. օդայինն է ջերմ, և խոնաւ. զոր հեայ՝ և Թոքայ ծ̃մ ջերմ և խոնաւ մարմին. իսկ հրայինն՝ չոր և ջերմ, իսկապէս ասի շոգի. որ է ծխատեսակ, և մխատեսակ բուղ՝ զոր շմայ՝ հեայ՝ Թոքայ՝ և բղխէ ծ̃մ ջերմ, և չոր մարմին. գոլոշին ելանէ 'ի գետոց՝ յ'աղբերաց, և յ'այլ ծ̃մ ջրային տեղեաց. իսկ՝ շոգին 'ի ցամաքային՝ չորային՝ և ջերմային իրաց, և տեղեաց ելանէ։

Տեղիք վերամբարձեայ գոլոշեացն երեք հիմարին. նախ՝ ծոց հողոյն՝ ուր գոն խորափիտ՝ ջրատաղտուկ աղտաղտուկ՝ ծըծմբատաղտուկ. և կայրա

և կայրատուղութեան տեղիք՝ և հանք ։ Երկրորդ՝ երեք կոյանքն օդոյն ։ Երրորդ՝ գայ և ծայ ջրոյն ։ Արդ՝ այսուհետև ճառեսցուք միրաամիա ըեզոռ՝ ի վերամբարձ, և գաղտնի մարմնոյն ։ Լեզի ուրեմն

Գլուխ Չորրորդ ։

Յաղագս հրոյին՝ և Շողեայ վերամբարձ եակաց, և զգուանաց ։

Վ խառն հրային՝ և շողեայ վերամբարձք են՝ որոտմն՝ փայլատակն՝ կայծակն՝ և գիսաստղն ։

Որոտն (որև՝ ամպահարութիւն՝ բառք՝ գոռ և թինդ ասի ։) ըստ Արիստոտելի կարծեացն՝ է հրային՝ ապակախառն, և ծխատեսակ շոգի ։ զոր՝ և ջերմ բնութեամբն վերացեալ յերկրէ ՚ի կամարն օդոյին, փակեցեալ ՚ի ներս խոնաւ՝ և թանձր ամպոյն, ապականեալ չարժամանք ինքք, կամ հակառակ ըրջակացութե ցրտոյն, որ գոյ ՚ի ներս ամպոյն ։ և այսպէս նսարացեալ և ապացեալ հրանեանկ շոգին, խնդրէ ինքեան դուռն ելանելոյ յ՚ամպոյն, և ոչ դտանէ ։ ապայ՝ հերձէ, և պատառէ ըզ թանձր ծալմունս ամպոցն՝ և առնէ զայն պխախ ձայթմունս, որ գոռ՝ կամ որոտ ասի ։

Ի՛ւղ որոտմանց անուանքն են՝ կրճտումն, շնչումն՝ ըրշնջումն, կամ, շըշումն ։ իսկ՝ ուժգին, և սաստիկ որոտմանց անուանքն՝ դղրդումն,

հեր

Հերձուն՝ և Ճայթուն։
Փայլատակն, կամ փայլակն է ուժ-
գին՝ անմարմնորութք, Հրձիգ՝ և փայ-
լուն բոց. որ ՚ի հրացեալ՝ բոցա-
ցեալ՝ և անմահերձ շողլեացն
պատճառի։
Որոտն յառաջ լինի, քանզ՝ փայ-
լակն. բայց՝ նախ զփայլակն տեսա-
նեմք, և ապա՝ զորոտն լսեմք. զի
տեսողական զօրութիւն փութով
զգայ, քան զլսողականն։
Կայծակն (որև՝ շանթ, և հրաձր
գուլթիտաքի.) է շող ի բոլորակիմք
հրացեալ ՚ի յամպն. որ պատառէ
զամպն, և ՚ի վայրբերի։ Շանթից
այլն է ծակիչ՝ այլն թօթափիչ՝ և
այլն կիզիչ։
Կայծակն ՚ի փայլատակէն զանա-
զանի. զի կայծակն է շող ի հրդե-
հեցեալ յամպն. և յամպոյն ՚ի
վայր հոսեալ. իսկ փայլակն է մի-
այն փայլածու բոց, և օդափայլ
ճառագայթ հրդեհեցել շոգւոյն
Գիտաւոր ատողն է հրայլին, են-
թարուանելոյ, և ապաղանձև էակ.
գոյացեալ ՚ի ջերմ և ՚ի չոր. ՚ի
խժոռ և ծխոտ, յառատ և պա-
րարա

րարտ, 'ի պատարուն՝ և մածուն 'ի թանձր՝, և 'ի մակարդուն շոգեաց. վերացեալ 'ի վերին կամարօղոյն. ուր շարժմամբ իւիք բոցացեալ՝ շառաւիղս ցոյթէ՝ յուրէք և իցէ:

Տեսակք գիսաստեղաց են երեք. վարսաւոր՝ մօրուաւոր, և տուտնաւոր. զի երբ երևեալ աստեղ մէջն է խիտ՝ և թանձր. բոլորն անդայտ՝ նուրբ, և նօսր, ասի վարսաւոր. երբ՝ մի կողմն մեծաշառաւիղ 'ի վայր ձգտի, ասի մօրուաւոր. իսկ երբ յաջկոյս՝ կամ 'ի ձախկոյս տարածի՝ և երկայնանայ. տուտնաւոր՝ պոչաւոր՝ և թրաձև յորջորջի:

Ժամանակ երևման գիսաւոր աստեղացն է, նախ աշունն. յետոյ գարունն՝ ապայ ամառն, և հուսկ յետոյ ձմեռն:

Գոյ և այլ բազումտեսակ հրային զբօսանաց՝ որպիսիք են. Հրացայտ ջահն. Բոցաձև սիւնն. Հրահոս սլաքն. Թռուչուն այծն. Թռուչուն կայծն. Թռուչուն վիշապն. Ջոլաստղն. Հրահոսնիզակն. և Սողի հուրն:

Գլուխ Հինգերորդ ։

Յաղագս Օդային վերամբարձ էակաց. որք են՝ հողմն, ամպն՝ և այլք ։

Առոչհեաւ ոմն վերամբարձ էակ գոյանայ 'ի Ջրային գոլորշեաց՝ և 'ի Հրային շոգեաց. այսինքն՝ 'ի ցուրտ՝ և խոնաւ, 'ի չոր՝ և ջերմ որակութեանց. գիտելի է զի մի տարերաց, և տարրացեալ գոյից սկզբնաւորութիւն՝ ասի ծծմբաղանդիկ. որ է գոլորշունակ, և շոգունակ զօրութիւն իւրն կերպարանելոյ՝ և հաղորդակցելոյ ինքեան զէակս՝ և զգոյս ։

Վասնզի՝ զօրութեամբ Ամենազօրին Աստուծոյ յ՚ընկզմանէ արարածոց՝ յորժամ

Երկիր էր աներևոյթ՝ և անպատրաստ, և խաւար 'ի վերայ անդնդոց ։ Ծննդոց 1 • 2 ։

Ընդհանուր՝ ընդածին՝ և երկազօր սերմն այն ծծմբաղանդիկ միաւորեցաւ՝ մածուցաւ՝ և իբր անբաժանօրէն պատուաստեցաւ ընդ աներևոյթ՝ և խաւարամած զանգուածոյն ։

Աստուած՝ մի գոյ՝ և գոյացեալ 'ի չորից տարերացն՝ ունի զոյժ աղի՝ սնդկի և ծծմբոյ ։ Ա

Ասացաւ թէ՝ սկզբնաւորին այն՝ ծըծմբաղանդիկ երկաւոր է և երկաբնակ. քանզի կերպաւորէ և հաղորդակցէ՝ կամ նմանացուցանէ ինքեան զկերպաւորեցեալս՝ զանազան տեսակաւ, ձևով՝ և գունով. այսպէս՝ զականս պատուականս այլ և այլ գունով՝ այլ և այլ ձևով. զբոյսս և զտունկս՝ զոստս և զտերևս, ծաղիկս և զպտուղս՝ երփներփն երանգով՝ զարմանազան հոտով՝ և ամենակերպ համով կերպարանէ՝ և ինքեան հաղորդակցէ, ք̃ս՝ նման ինքեան առնէ. նոյնպէս զանդամս մարմնոյ կերպաւորէ՝ զջիլս լարէ՝ զերակս փորէ՝ և զկայուն ոսկերս ուղղածծով լնու, ինքեան ևս ամենասքանչ զօրութեամբն նմանացուցանէ՝ և հաղորդակցէ։

Պիտոյութիւն այսր երկաւոր ծծմբաղանդկեայ սերման յայտնապէս երևի յԱծաշունչ Սբ գրոց, որ ընթեռնումք։

Եւ ասաց Ած. Բղխեսցէ Երկիր զԲանջար խոտոյ՝ և սերմանաւոր ըստ ազգի, և ըստ նմանութեան. և ծառ պտղաբեր՝ առնել պտուղ ըստ ազգի իւրում, որոյ սերմն իւր ՚ի նմին իցէ ըստ ազգի ՚ի վե

րայ երկրի. և եղև այնպէս։ Ծնն. I. II։

Առաւելապէս զտամնի ծծմբաղամնդկեայ սերմն՝ յ'երակս, և 'ի զաղտազնաց խողովակս, յ'այրս՝ և 'ի խորշս հողոյն. որ յ'արգանդի իւրում ունի զարանս հրոյ. յորձանս ջրոյ՝ ծոցս օդոյ, և հետևապէս առաւելութի յոլովամեղձ ծխոց՝ գոլորշեաց՝ շոգեաց՝ և ծծմբաղամնդկեայ շնչոց. ուստի գոյանան ամ հանք՝ և զբօսանք։

Ա յաւելուած՝ դարձցուք գրել յաղագս Օդայնոցն։

Հողմն ուրեմն՝ է Տապաշարժ՝ գոլորշամուղ, և փքահոս Շունչ. 'ի զօրութենէ աստեղաց՝ և մոլորականացն յ'երկրէ վերացեալ. 'ի ջերմութենէ՝ կամ 'ի ցրտութէ օդոյն ուժգին անձկացեալ. և յայսկոյս՝ յայնկոյս խառնորնակն վարանեալ։

Հողմն յ'ամուրեք է երկդիմի՝ Աշտահօս, և Երբեմնահօս։

Աշտահօս հողմն միշտ ըհետ Արեգական՝ և Լուսնոյն երթալով յ'Արևելից յ'Արևմուտս անխափան փչէ, եթէ 'ի լեռանց՝ կամ յ'այլ ընդդիմակաց իրաց ոչ արգելանի. և այս այսպէս ծնանի. Արեգակն (որ միշտ միակերպ թաւալմամբ յ'Առաջին շարժմա

նէն ընդ Կենդանակերպարան գօտւոյն յ'արևելից յ'արևմուտս հողմի:) ուղիղ շառաւիղաւն հարէ զՈվկիանոս ծովն, որ 'ի Խոյ կենդանակերպէն մինչև 'ի կշիռն հարէ շառաւիղ արեգական ըզ հիւսիսային ովկիանոսն. իսկ՝ 'ի կշռէն մինչև 'ի ձուկն զհարաւային ծովն հարէ: Արդ՝ 'ի մտանել արեգական՝ ուրուրեքևիցէ՝ սաստիկ արևածին ջերմութիւնն նրբացուցանէ զծովու ջուրն, և վերացուցանէ յ'օդոյ կամարն զառատութիւն շոգախառն գոլորշեաց. յետոյ այսպիսի առատութիւն շոգախառն գոլորշեացն վերացեալ 'ի յ'օդն՝ և նօսրացեալ, մինչ ուժգին յառաջ մղէ՝ հարէ, և վարէ զօդն այն, որ է ընդառաջ արեգական՝ շարժի նախընթաց օդն յայնկոյս կողմն, յո՛ ընթանայ արեգակն. և այսպէս՝ պատճառի Մշտահոս հողմն յ'Արևելից յ'Արևմուտս ըստ ընթացից Արեգական:

Բայց զի Հիւսիսային՝ և Հարաւային օդն է թանձրագոյն՝ ոչ տան մուտ՝ և տեղի այնմ նաւուրբ՝ և նօ

րա

րածին շոգախառն գոլորշեաց ա-
ռատութեն. որ աղագաւ՝ հար
կիւ օդն յ'արեելից յ'արեւմուտ
խաղայ՝ ըստ ընթացից Արեուն։
Արեւի յայտնապէս տեսանի, յ'ա-
րեւելից յ'արեւմուտ դիւրաքայր
գոլ նաւագնայութեն, քանթէ՝
յ'արեւմտից յ'արեւելս։
Արքեմնահոս հողմն միայն 'ի տե-
ղիս տեղիս երքեմն փչէ. և ծնա-
նի կամ յ'անօսրութենէ՝ և 'ի
թանձրութենէ օդոյն. կամ 'ի
հալմանէ ձեան, որ անպակաս 'ի
բարձրագագաթ լերինս նստի.
կամ թէ՝ յ'ենթերկրածին գոլո-
շեացն, որք զօրութբն են ցուրտ՝
և խոնաւ, որպէս ջուրն. և շո-
գեացն, որք զօրութբն են ջերմ
և չոր, ոպ հուրն. կամ 'ի ծագ-
մանէ աստեղաց ոմանց. կմ 'ի լե-
րանց լծորդաց՝ և յ'ալէտանջ ծո-
վափից։ Յասացելոցս
դիւրաւ իմասցի ծնունդն երքե-
մնահոս հողմոցն, որք ԱՀ Տուրբոդ+
ասին. ոյ՝ փոթորիկ՝ ամպահերձ
հրացան, և տարափածին քամոց։
Ոիւք հողմոցն՝ ըստ նորագոյն

Նաւ

Նահանգացն, 32 համարին․ ո-րոց նորակերտ՝ և անլուր անուանքն տեսանին ընդ հետևեալ քա-շուածովս․ և զօրութիւնքն մեկնին յ'Երկրորդ Հատորումն ։

Ի Հողմոց չորքն են գլխաւորք․ այսինքն Արևելեան՝ Արևմտեան՝ Հարաւային՝ և Հիւսիսային հողմն ։ Չորքն են ընդմի ջակամք ։ Ութն կողմնականք․ Տասն՝ և վեցն կողմնակիցք ։

Աղեղն է փայլուն՝ և բազմա-գոյն դարունակ Ծիածանն․ և երևեալ 'ի ցօղալից՝ և յ'մլուսանց 'ի նսեմ, և 'ի խորափոր յ'ամպոց՝ և կամ 'ի թանձրագոլոշ օդոցն․ ծնեալ 'ի շառաւիղացայտ ճառագայթիցն յանդիմանակաց Արե-գական՝ և Լուսնոյն ։

Գոյնք աղեղան երեք համարին․ Ծիրանի, Կանաչ, և Կապոյտ ։

## ՋՐԱՅԻՆՔ ։

Ջրային զրօսանացն այլքն ա-սին զօրութք, և այլքն ներգոր-ծութք ջրայինք ։

Զօրութք ջրայինք են, ամպն՝ ձիւնն՝ մուայլն՝ ցօղն՝ և եղեամն ։

Ներգործութք ջրայինք են, անձրևն՝ կար-կուտն

Նաւուղղացն, 32 համարեն․ ո-րոց նորակերտ՝ և անլուր անուանքն տեսանին ընդ հետևեալ քաշուածոյս․ և զօրութիւքն մեկնին յ՚Երկրորդ Հատորումս ։

Ի Հողմոց չորքն են գլխաւորք․ այսինքն Արևելեան՝ Արևմտեան՝ Հարաւային՝ և Հիւսիսային հողմն ։ Չորքն են ընդմիջականք ։ Ութն կողմնականք․ Տասն՝ և վեցն կողմնակիցք ։

Երկիր է փայլուն՝ և բազմագոյն դարունակ Ախածանն․ երևեալ ՚ի ցօղալից՝ և յ՚ոնլուսանց՝ ՚ի նսեմ, և ՚ի խոռափոր յ՚ամպոջ՝ և կամ ՚ի Թանձրագոլոշ օդոջն․ ծնեալ ՚ի շառաւղացայտ Ճառագայթիցն յանդիմանակաց Արեգական՝ և Լուսնոյն ։

Գոյնք աղեղան երեք համարին․ Ծիրանի, կանաչ, և կապոյտ ։

## ՋՐԱՅԻՆՔ ։

Ջրային զրօսանացն այլքն ասին զօրութիւք, և այլքն ներգործութիւք Ջրայինք ։

Զօրութիւք Ջրայինք են, ամպն՝ ձիւնն՝ մառայլն՝ ցօղն՝ և եղեամն ։

Ներգործութիւք Ջրայինք են, անձրևն՝ կարկուտն

կուտն՝ և ցօղն։

Երիւք եղանակօք յառաջանան այսպիսի ջրայինք, ո՞ր Թանձրութեամբ՝ Պաղութեամբ՝ և Լուծութեամբ վերացել գոլորշեացն։

Թանձրութբ̃ գոլորշեաց գոյանան ամպն, ցօղն, և այլ այսր կարգի զբօսանք։
Պաղութբ̃ն, ձիւն՝ կարկուտ, և սառն։
Իսկ՝ լուծութեամբն գոյանայ անձրեւն։

Միջին կամար օդոյն ունի զամպն և զձիւնն. ներքինն ունի զմռայլն՝ ցօղն՝ և զեղեամն. իսկ տեղիք անձրեւացն՝ կարկտացն՝ և սառանցն՝ են միջին, կամ ներքին կամարն օդոյն։

Ծնունդ այսպիսի ջրային վերամբարձ եակաց այսպէս լինի։

Ա. ՍՏեղք ընդ Արեգական ինքնաբուն ջերմութեամբն ՚ի վեր քարշեն ըղ շոգին՝ և զգոլորշին ՚ի խոնաւ տեղեաց, և ՚ի գաղտագնաց երակաց. ուր գոն զանազան հանք Բորաքի, Աճառի, կամ Օճառի՝ Կպրոյ Ծծըմբոյ, Սնդկի՝ և այլ ընդ երկրաւ եղեալ շնչոցն. և ամբառնան մինչև ՚ի կամարս օդոյն. Որ վերացեալքն՝ թողեալ սակաւ ջերմութեանն՝ զոր ունէին, դառնան ՚ի բնածին ցրտութիւնն. ապա՝ զուտ՝ և նուրբ գոլորշին վերացեալ ՚ի միջին կամար օդոյն, նեղի՝ և անձկանայ ՚ի ցրտութենէն նոյնոյ միջին կամարին, և սակաւ առ սակաւ միմեամբ յօդի՝ մածի, և

Թանձ

Թանձրանայ 'ի պտտիլն՝ կամ յ'ամուլանալն։ Աղ ձայն պղպջոջ է Ներագոյն՝ Թանձրաձայն՝ և Ըղեղ. Իսկ՝ ամառն՝ և ուսքին ամայն է նոր՝ պտղն ըմպել՝ ցամաք, և անըղեղին։

Բայց՝ վերացեալ գոլոշին՝ թէ լիցէ յ'երակաց օձաձև, տղմ, և քարաքարշեցեալ և 'ի միջին կամարոցն սաստիկ ցրտութեան հանդիպեալ, նոյն՝ ցուրտ հողմոյն ուժգին հարեալ՝ փոխարկի 'ի ձիւնեայ գունտակ, կամ 'ի հոլանեալ ձիւն։

Այլ թէ՝ վերացեալ գոլոշին չիցէ նուրբ և զուտ, բայց՝ անպիտան խառնեալ՝ և իբր անանձրեւածին կղկղան, փոխարկի 'ի մառախուղ և 'ի մէգ։

ՑՕՂՆ, գոյանայ 'ի նրբագոյն գոլոշեաց. որ մեղկ ցրտութեամբ պարզագիշերայն փոխարկի՝ և թանձրանայ 'ի ցօղ. բայց թէ՝ ցրտութիւնն լիցէ սաստիկ, նրբագոյն գոլոշին թանձրանայ 'ի յ'եղեամն։

Կայ շահաւէտ՝ և վնասակար ցօղ՝ Ցօղ շահաւէտ է նախ՝ և աւելի՝ հասարակշաղն, որ տէն՝ և ս աւէ՝ մեղրն՝ մանանայն՝ և լադանն։ Հասարակշաղն է առաւօտեան ցօղն, որ նստի 'ի վերայ դալարոյ։ Մեղրն է քաղցրահամ ցօղ՝ նստեալ 'ի վերայ ծաղկանց՝ և տերևոց. ուստի մեղուք հաւաքեն զմե

զմեղրագործելին, Թիկամբ իսկ և կրկնուածով ոտիցն բերեն 'ի մեղուոյն, և առնեն զիմաստութե գործն այն զարմանալի։

Մանանայն է բարեխառն երկնի և երկրի ցօղ՝ յառաջեալ 'ի նըրբագոյն գոլոշեացն արգաւանդ հողոյ, վերացեալ 'ի քաղցրեղանակ օդն, և մեզմ ցրտութեամբ 'ի մանանայ թանձրացեալ։

Լադանն գոյանայ՝ երբ առաւօտեան ցօղն նստի 'ի վերայ խոտոյն որ Յունարէն Լէդոն, Արաբերէն Լյասանձայնի. քիրտ խոտոյն խառնեալ՝ և մածուցեալ ընդ ցօղոյն լինի լադան։

Անապակար ցօղն է երբ՝ ծագեալ արեգակն, կաթուածք մանունք անձայն՝ և հապճեպ թօթափին՝ և նորաբոյս տնկոց վնասեն։

ԱՆՁՐԵՒՆ է լուծումն և արձակումն թխագոյն ամպոյն 'ի ջուր։ Գոյ մանրամաղ անձրև 'ի սակաւաջուր ամպոց. ուժգին անձրև՝ 'ի բարձր յամպոց. տարափ անձրև՝ 'ի մերձաւոր ամպ ց

Աար

ՍԱրկուամ է ջերմախառն անձրև՝ սաստիկ ցրտութեամբ օդոյն պաղուցեալ։

ՍԱՌՆ է ջուր արտաքին ցրտութեամբ օդոյն պաղուցեալ։

Արդ՝ յ'ասացելոցս յայտնապէս երևի՝ զի գոլորշին, և շոգին են մայր ամ̃ զբօսանաց· մանաւանդ ջրայնոցն· քանզի՝ 'ի ջրոյ զատի գոլորշին· 'ի գոլորշէց թանձրանայ ամպն· յ'ամպոյն թանձրանայ ձիւնն, և լուծանի անձրևն· յ'անձրևէն պաղի կարկուտն։

## ՀՈՂԱՅԻՆՔ·

ԳԵտնաշարժն՝ կամ Երկրաշարժն ոչ այլ ինչ է, եթէ ոչ՝ Սասանութիւն իմն երկրի՝ լեալ 'ի շնչոյ, որք ի̃ երկրաւ փակեալ՝ զելս խնդրելով ինքեանց, պատառեն զերկիր վերացուցմամբ՝ կամ ցածուցմամբ։

Չորք համարին տեսակք Գետնաշարժին· Երերումն՝ կամ դողումն· Բաղխումն· Յարաշարժ,

և

և Միջակոտոր երկրաշարժ։
Պատճառք գետնաշարժին երեք համարին. ա՛ Տապացեալ գոլորշիքն. բ՛ Փքամուղ հողմն, և Ընդ երկրաւ եղեալ ծծմբաղամնդկեայ հուրն. որք միանգամայն են, և ասին Շունչք։
Գետնաշարժի ձայնքն են՝ շշնջիւն. քրթմնջիւն. ղօղանջ. գոռ-բոմբ, և ճիչ։

Ա՛ստ մինչ բարձրայօն, և շաղախմաշուրթն ի մասնաւոր վայրագօրէն շաղփաղփեցէ, կամ քմածագրելով եպերիցէ զմեզ՝ եբր թէ գոլ անհնարին իմն՝ զերկիր շարժիլ՝ ի բուռն շնչոց։ Այնպիսի Յօնն՝ պատասխանիցէ այսպիսի հարցաքանութեանցս։

Զիարդ հողմն (որ է փափկագոյն օդոյ) արմատաքն խլէ, և քանդէ զծառս մեծամեծս. շրջէ զհաստատահիմն շինուածս, զապարանս, և զաշտարակս։ Զիարդ գլէ զապառաժ քարս, և՛ ի մի վայրէ յ'այլ միւս վայր նետէ զորձաքարս վիմաց։ Զիարդ խելառք ձեռօք միայն ջախջախեն զայնպիսի շղթայս, զորս բազումարք 'ի միասին ոչ բաւեն խորտակել։ Եթէ ոչ Զօրութբ Շնչոց։

Ուսի՛ր ուրեմն՝ դու անուսդ՝ զուսումն յ'Ուսումնասիրաց, և զանուսս դու ուսո՛։ Եր՛ մանաւանդ Ուսումնաբան, քանթէ՝ Ուսումնագան, և Սայրախօս։

Պրա

## Գլուխ Վեցերորդ։

### Ծաղկաքաղ ծանօթութիւն Երկրագունտ Աշխարհի։

Երկիր ասեմ՝ է երկու իր. այսինքն՝ Հողոյ, և Ցամաքի բոլորակն, և գունտն. ուստի յառաջանայ ԵՐԿՐԱ-ԳՈՒՆՏ բառն առ Զքնաղաբանս։

Շրջան երկրագնտոյն յարևելից յարևմուտս ունի մղոնս 21600. Որպէս՝ 'ի Հարաւային բևեռէն 'ի Հիւսիսայինն ևս։

Խորութիւն երկրագնտոյն ունի մղոնս իբր՝ 6872։

Եթէ ոք կամիցի վերահասու լինիլ այսր խորութեան, թէ՝ որպէս՝ և ի՛ն ի՛նիք մղոնաձեւմ չափս այս իմանի. իմացցէ այսպէս։

Երկրագնտի շրջանն ունի զաստիճանս 360. և իւրաքանչիւր աստիճան ունի 60 մասնիկս, կամ 60 միլ՝ և մղոն Իտալական։

Երկրագնտի զաստիճանսն վացուն թ՛ուղն բազմապատկեա, և գտցես զվերոգրեցեալ մղոնսն. Աւէ բազմապատկես եօթն թր-

ողն

ոչն զմղոնսն Երկրագնտին, և զբազմապատկածն բաժանես 22 լծ̂ոչն. բաժանեալ Թիւ̂ն ցուցանէ զմղոնսն խորութեան երկրագնտին:

Չրահող երկրագունդն ունի ը̃ ծործորիւս 'ի բևեռէ 'ի բևեռ՝ և յ'ելից 'ի մուտս արևու՝ ընծակրցեալս, Թէ երևելիս՝ և Թէ ը̃ ծոյլ անցեալ մեզ աներևոյթս. ուր ջրակոյտ դաշտանք, և ամբար ջրբուղխ. ուստի աղբիւրք, առուք՝ և գետք:

Սոյնպէս ընդ ուրուք ջանեմարանս՝ և պահեստս հրոյ. ըստ որում հրաբուղխ լերինքն յայտայանդիմանս հաստատեն:

Նայե՝ զանուանսն կղզեաց. յորոց անուանքն ընԹագրին:

| | Մղ. Երկայն: | Լայն: |
|---|---|---|
| Անգլիայ՝ կամ Ինգլանդ | 336: | 384: |
| Հիբերնիա՝ որ է Իռլանդ՝ | 330: | 261: |
| Սիկիլիայ՝ | 204: | 108: |
| Կիպրոս՝ յ'ելից 'ի մուտս | 150: | 60: |
| Կրետայ՝ կամ Գրիդն | 204: | 60: |
| Մալթայ՝ յ'ելից 'ի մուտս | 20: | 12: |
| Քիոս՝ կամ Սաղըզն բոլորի 90 մղոնիւք: | | |
| Մայեօրկայ՝ յ'ելից 'ի մուտս | 66: | 43: |
| Նեգրոպոնտն՝ | 132: | 36: |
| Մադագասգար՝ | 900: | |
| Ճապան՝ | 600: | 270: |
| Աշիմ | 900: | 210: |

Չափ

| Զափ ծովուց, ըստ Միլ. Երկայն : | | Լայն : |
|---|---|---|
| Ծով Միջերկրեայ, է | 2980 : | 600 : |
| Կարմիր ծովն՝ | 1200 : | 180 : |
| Սեւ ծովն՝ | 480 : | 480 : |
| Պարսկային ծովն՝ | 7500 : | 4800 : |

Ամենայն ծով ծովակ, և լիճ ունի կապակցութիւն ընդ ծայրածաւալ Ովկիանոս ծովուն : Օրինակ.քեզ. Կասպից ծովն ընդ երկրաւ եղեալ գաղտնի ջրմուղ գնացիւք 'ի Հարաւկոյս կողմանէ խառնի ընդ Պարսկային ծոցոյն. իսկ՝ արևմտեայ գաղտնի ջրմուղ գնացիւք խառնի ընդ սև ծովուն. որպէս և կարմիր ծովն ընդ որջասուզեալ՝ գաղտնի ջրմուղիւ խառնի ընդ Միջերկրեայ ծովուն : Վասնզի՝ ամենայն ծով ելանէ 'ի տիեզերածաւալ Ովկիանոսէն, և դարձեալ իջանէ առ ծնօղն իւր : Երկրագունտ աշխարհս Հասարակօրէն 'ի չորս մասունս բաժանի, ըստ որում Հետևեն :

| | | |
|---|---|---|
| Ասիոյ՝ երկայն | 7200 մղոնս. | լայն 5100 : |
| Եւրոպայ՝ | 4800, | 2700 |
| Ափրիկոյ՝ | 4800, | 4200 . |
| Ամերիկոյ՝ | 7800, | 4800 : |

Այս բաժինս այսպէս անուանեցաւ, քանզի՝ Ամերիկոս Վէսպուչիոս 'ի Փլորենցոյ

քա

քաղաքէն յԱմի Տեառն 1494, եբաց բազում գաւառս այնր մասին, և անուանեցաւ յանուն նորա Ամերիկայ, Թէև՝ սկիզբն, և պատճառ առաջին լեալ իցէ Ջենուացի Քրիստափոր Կոլոմբն, յամի ՏԵԱՌՆ 1492 ։

Պրակ Ե. օծանելեաց.

Ցաղագս Երակաց Հողոյն ։

Մետաղին ծնունդ, բեր՝ ողը տուղ՝ երակ՝ և հաստատած հողոյն յառաջանայ ՚ի գէջ՝ և տամուկ, ՚ի մեղկ՝ և խժառ, ՚ի կպուն՝ և յօծուն, ՚ի կայուն՝ և հաստատուն ընչոց ։

Տամուկ շունչն ՚ի Վ. խմիայից առի փայլածու. ծառայ փախստական. ջուր. կապ. ջրային շունչ՝ և մնդիկ բնութեան ։

Ծծուն շունչն առի կարիծ. քար քրօբէական. հոգի. իւղ. հրային շունչ՝ և ծրծումբ բնութե ։

Հաստատուն շունչն առի աղծիւ՝ հող. մարմին. հողային շունչ՝ և աղ բնութեան ։

Այս երեքեան շունչս՝ միով բառիւ ծծմբաղամնդկեայ սկզբնաւորին ձայնի ։ Մայց

Բայց ՚ի յայս եռադիմի ծծմբա-
ղանդիկ սկզբնաւորմանէն՝ գոյ
այլ ծծմբաողանդիկ շունչ՝ Ճ՛ար-
տարապետ բազմահընար, և կեր-
պաւորիչ եակաց, որ ընդածին՝ և
բնաւորեալ բնութ՟ն զէնթա-
կայն յ՚այս՝ կամ յ՚այն տեսակ է-
ակաց կերպւորէ ըստ ընդունա-
կութեան նիւթոյն. քանզի՝ ա-
մենախնամն Ա՟ծ՝ բայց ՚ի հակա-
ռակ, և միաբան քառից տարերց՝
՚ի չորից որակութեց, և յ՚երից
ծծմբաողանդկեայ շնչոցն, ետ
Ի՛ ըկրագունս աշխարհիս զօրու-
թ՟ն իմն կերպաւորիչ՝ և բազմա-
հընար՝ որ ուրանօր հրահալէ-
լեաց յարմար նիւթ գտանէ, զա-
նազան հրահալելիս հաստատէ.
ուր քարանց պատշաճ նիւթոյ հա-
դիպի, զայլև այլ քարինս յօրինէ.
ուր ականց ընդունակ էնթակայ
երևի, զականս պատուականս յար-
դարէ. իսկ ուր ուղղալի հողոց
պատկան էնթակայ գտանէ, զայլ
և այլ հողս ճարտարագործէ։

Առ այս իմն։

Ճ՛շմարիտ իմն է, զի յ՚ստեղծու-
ածս

ածս գոլ բնաւորեալ համակիր՝ և
հակակիր բնութի, որով առ մի_
մեանս բերին, կամ միմեանց հա
կառակին. նոյն՝ սոյգ իմն է, զի
գոլոշիք՝ և շոգիք (որք են բարակ
փուղձ, նուրբ ճենճեր, և անըր_
գայ շունչ.) յ'երկրագունտ ծխս
պատճառեն զմեծամեծ՝ և զանա
զին փոփոխմունս 'ի գոյս՝ և յ'էս:
Քանզի՝ գոլոշիք, և շոգիք ուրա_
նօր իւրեանց նման էութի գտա
նեն. իսկոյն շաղկապին ընդ այնոցի
սի համաբուն էութեանց. յ'որս
գոյ բնաւորեալ ծծմբաղամնդիկ
շունչն կերպաւորիչ՝ և ճարտարա
գործ. որ ըստ ընդունակութեան
նիւթոյն՝ ընձեռէ նոյա զպատկան
կերպս արծնելոյն, զպատշաճս
գունելոյն, և զ յարմար գոյնս
նկարելոյն՝ թէ 'ի զգայուն, և է
թէ յ'անզգայ գոյացեալ
առեղծուածս:

Ի՛

Ուրեմն ժամանակ, զի հաւեռ
ցուք զառ 'ի առաջիկայէս. նախ
թէ զինչ իցէ կայուն, հաստա
տուն, և հողային շունչն. յետոյ
զհետևելոյն: Գո

Հողային շունչն խառնեալ՝ շաղ-
եալ՝ և մածուցեալ ընդ այլևայլ
տղմից՝ յեղտիւրից՝ փշրանաց՝ և
հողոց։ սակաւ՝ առ սակաւ զերիս
ցեղս աղից յառաջբերէր, այսինքն
Նաթրուն, Պաղլեղ՝ և Սևալեղ.
որք յետոյ այլևայլ ինքեանց հա
մեմատ հողային գոյացութեանց
յարեալք, շաղախեալք, և շաղ-
կապեալք ծնան՝ և ծնանին օր-
ըստ օրէ զնմ տեսակ քարանց,
Ականց, Հրահալելեաց, և ուղղա-
լի հողոց։

Յաղագս Քարանց, և Ականց։

Պատճառ նիւթական ամենայն
քարանց՝ և ականց է բնութե
աղին ծորանն ընդ եռատեսակ
աղիցն մակարդեալ. այ՝ ընդ նաթ-
րուն, պաղլեղ՝ և սևալեղ աղիցն
մածուցեալ։

Արարչական պատճառն քարանց
է ջերմութի աստեղաց, և ենթ-
երկրեայ հրոյն։

Տեսակական պատճառ քարանց է
ծծմբաքարանդիկ շունչն կերպաւ-
որիչ՝ բազմահնար, քարագործ՝
և ճարտարապետ, որ ընդ նմ եր

կէր տարածեալ՝ յեռեալ՝ և ըն
դելուզեալ գտանի ։

Ասացի՝ թէ պատճառ նիւթա
կան ամէքարանց, և ակաւնց է ծո
րանն բնութեան աղին ։ Այց՝ գի
տելի է սաստ ։ Աղն բնութեան
'ի կենդանիս թեթևագոյն է քան
զաղն 'ի բուսոց ։ և աղն 'ի բուսոց
թեթևագոյն քան զաղն յ'երկրաց ։
Աստ այսմ սահմանի՝ եթէ յ'երա
կաց աղն տայցէ 4 լիտր հող ։ 3 լի
տր ջուր ։ 2 լիտր օդ ։ 1 լիտր հուր ։
Բուսականն աղն պարտի տալ 4 լի
տր ջուր ։ 3 լիտր հող ։ 2 լիտր օդ ։
1 լիտր հուր ։ Իսկ 'ի կենդանեաց
յառաջեալ աղի մարմինն պարտի
տալ 4 լիտր հուր ։ 3 լիտր օդ ։ 2 լի
տր ջուր, և 1 լիտր հող ։

Ա. Աղանց այլն է հասարակ՝ և
միջադաս ։ այլն պատուական ։

Հասարակ՝ և միջադաս քարինքն
են՝ ամէն տեսակ չէչ քարիցն ։ ոմնա
քարն ։ սումփարայն ։ սևսաթն,
և ամէն տեսակ կճեայ քարիցն ։ Նայ
և՝ գետաքարն՝ ուլմբաքարն՝ որձա
քարն՝ սալքարն՝ հրհանն՝ եսան

և սմաղ քարն՝ մահաքն՝ և այլ ոս
ցին նման սալոցեալ քարինքն ։
Տակաւին՝ փանզահրն՝ երկաթա
քաշն՝ կամ ժառատն, որ մագնէտ
և մղլադուզ քար և սաի․ բուստ
քարն՝ կամ մարջանն․ քահրիբարն
արծաթաքարն, և այլ ամ քարինք՝
որք 'ի կենդանեաց յառաջգան ։
Պատուական ակունքն՝ որք 'ի ծը
ծմբաղանդին ծորանաց յառա
ջանան, են բազմատեսակք․ որոց
անուանակոչութին, գոյնն, և զօ
րութին մի ըստ միոջէ քննելն՝ տե
ղի, և ժամանակ ոչ գոյ մեզ ։
Մեք միայն զԱհարոնի չորեքկար
գեան ականակապ վակասին զեր
կոտասան ակունսն գրեսցուք՝ ըստ
Հեբրայեցւոց, և Խօթանասուն
երկու Թարգմանչաց Օրինակին ։

Առաջին Ահարոնի վակասի ակն Եբրայ
եցերէն ասի՝ Օդամ, Լատիներէն՝
Սարդիուս, Հայերէն՝ Սարդիոն․ որ է
Եամանի, կամ կարմիր սէյլանն․ մասգոյն,
արիւնակապ՝ խրախարար և կխաթափանց ։
Երկրորդն՝ Եբ, Պետէդա ։ Ն, Տօպազի
ուս ։ Հ, Տպազիոն՝ և Պիճաու, որ է դեղին
սէյլանն՝ և Թօպազն ։ կապտաշագ դեղին,
տխրութեան՝ և առաստեսութե օգնիչ ։
Երրորդն՝ ըստ Եբրայեցւոց Օրինակին, եր՝

Բ.ե

Բէրէքէթ, լա՝ Զէրամնիա, հայ՝ Կայծ֊
ակն, կապտաշագ կանաչ. բայց՝ ըԵօթա
նասնիցն, եբ՝ Շօհամ, լա՝ Սմարագդուս՝
հա՝ Զմրուխտ և զմլուռթ, ագնիւ կանաչ։
Չորրորդն՝ եբ՝ Նէֆէք, լա՝ Կարբունկու֊
լուս, հա՝ Կարկեհան կամ եաղութ. ագնիւ
կարմիր, մահադեղից Ըգէմ, ուրախարար
և սակաւաքուն առնօղ քունօղն։
Հինգերորդն՝ եբ՝ Սափիր, լա՝ Սաֆիրուս
հա՝ Շափիղայ կամ Սաֆիր, կապտա
շագ քրքմագոյն։
Վեցերորդն՝ ըստ Եբրայ, Հալօմ, Լա՝
Ադամաս. ըմեզ ևս Ադամաս՝ կամ ալ֊
մաղ. պայծառ՝ փայլուն՝ և թափանցիկ
ակն. Իսկ՝ ըԵօթանասնիցն՝ Յասպիս
Հայերէն, եբ՝ Եասպա, լա՝ Եասպիս, և
աշխարհօրէն՝ զապարճատ, կամ եաշմ. կա
նաչ դեղնաշորթ ակն։
Եօթներորդն՝ եբր՝ Լէշամ, լա՝ Լիգուրի
ուս՝ կամ Թուրքօյզ, հայ՝ Գոճազմ կամ փի
րուզայ. կապտաշորթ կանաչ ակն։
Ութերորդն՝ ըստ Եբր՝ Շաբօ, որ է լա՝
Հիաչինթուս, հայ՝ Յակինթ կամ կապու
տակն. դեղին, ևս կապտաշորթ կանաչ.
իսկ՝ ըԵօթա՝ Ակատ, որ է կարմիր՝ և
գունագոյն ալլիզն։
Իններորդն՝ ըստ Եբր՝ Թարսիս, որ է լա՝
Քրիսօլիթուս, հայ՝ ոսկեակն կամ Թիլայ՝
ոսկէգոյն ակն. իսկ՝ ըԵօթա՝ է Սուտակ
ակն, լա՝ Ամեթեստուս, աշխարհաբա
ռսի լալ՝ ծիրանեգոյն ակն։
Տասներորդն՝ ըստ Եբր՝ Շօհամ, որ է դա
հանակ՝ կամ զմրուխտ. ըԵօթա՝ ոսկեակ
ակն է կամ Թիլայ։
Մետասաներորդն՝ Եբր՝ ախլամա, Լա՝
օնիքս, Հայն՝ եղունգն. եղնգնագոյն։

Երկոտասաներորդն՝ ըստ Եբր՝ եւմայետ որ է յասպիս. իսկ ըստ Եօթա՝ Բիւրեղ Լամթի՝ բերիլլոս, որ է բիլօր. կապտաշաղ կանաչ անի։

## Գլուխ Ութերորդ։

### Յաղագս ուղղալի հողոց։

ՈՐ. զմիտս յանցեալ պրակսն գրեցաք, թէ՝ սկզբնատարերմն մարմնեղականն՝ և զգալիեից է աղ՝ ծծումբ, և սնդիկ բնութեան, ըստ բնաւորեալ կերպաւորիչ շնչոյն. բայց՝ ոչ թէ հասարակ, տեսականելի, շօշափելի, և վաճառելի աղ՝ ծծումբ, և սնդիկ. այլ՝ անտեսականն, անշօշափելի, և անտեսանելի. որ բնաւորեալ է համայն ըստեղծուածս, ՚ի փոշիս՝ և յաւազս ՚ի կոշտս՝ և ՚ի փխրուածս, ՚ի փշուրս և ՚ի կաւոյս, ՚ի կոնքս, և ՚ի տաշտակս, ՚ի քարս՝ և ՚ի յուղղածուծ հողս միշտ՝ և յամենուրեք գաղտնի։ Ճ՛արդ՝ և պարզութիւն ծըծմբաղանձնիկ սկզբնատարրմանն է նիւթ՝ և պատճառ նմ ուղղալի հողոց. որք են գաղջ կիր՝ կաւիճ, որ է դաբաշիր, բորակաւ՝ լեմնակաւ, հայկաւ, թաղր՝ ամիանթ՝ ծծումբ՝ ձիւթ՝ նաւթ՝ կուպր՝

կպրա

կպրածիւթ՝ հաստատուն աղ՝ ենթա_ դիր՝ գօգաւորչիլ՝ սևալեղ՝ որ զաջ_ ևս ասի, պաղլեղ՝ ճո շար, զաւրիկ՝ նաւթրուն, կամ բարրան՝ և այլ յո_ լով ուղղածուծ հողք։

Զինչ է Ամիանթն։

Ամիանթն (որև՝ ասվեստոս, այս ինքն՝ անշէջ՝ և անկեզ.) է անեղծ և անսպառ քար, որ և ոչ 'ի հրոյ սպառի, եղծանի, կամ ապականի։ Այս ասվեստոս՝ և անշէջ քարս է նման թեփաւոր պաղլեղին. յ՝որ մէ կերտի, շինի, և գործի պա_ տրոյգ՝ քթուղթ, և կտաւ անկիզե_ լի, և անապականն 'ի հրոյ։

Թուի թէ՝ անշէջ քարս այս բաղ_ կացեալ իցէ 'ի թեփաւոր պաղլե_ զէ. կամ 'ի թալխէ, և ունի տա_ րածեալ բամպակագոյն թելս՝ և չերտս. ուստի թևաւոր՝ կամ թե_ փաւոր շաբ ասի յ՝այլոց։

Նաև՝ ունի յ՝ինքեան ընդածին պարարտութին, և կպչութին իմն ընդ հողային նիւթոյն այնպէս մա_ կարդեալ՝ մինչզի և ոչ հրով բա_ ժանի. քանզի՝ նիւթ այսր ամի_ անթ քարիս է միաչափ՝ նմանա_ մաս

մասնեայ անշնչահան խժոտ՝ Ճարպուն՝ կպուն՝ և մածուն։

### Յաղագս Ծծմբոյն։

Ծծումբն՝ որ Հելլէն լեզուաւ Թիոն, Լատիներէն ասի Սուլֆուր՝ և աշխարհօրէն Կիբրիթ։ Է Ճարպ՝ պարարտութիւն, կամ գիրութն հողոյն։ Ճրմլեալ՝ սեղմեցեալ՝ քամեալ՝ և մզեալ զօրութբ ջերմութեն։

Ծծումբն ջերմութբ լուծանի՝ և հալի։ ցրտութբ թանձրանայ՝ և պնդանայ։ ուստի յայտնի Լուծանելութիւն ինչ ծծմբոյն։

Այլև՝ 'ի մանրամաղ փոշի կարէ լինիլ։ ուստի երևի հողային Չորութիւնն ծծմբոյն։

Պարձեալ՝ նոյն ծծումբն բորբոքի դիւրաւ՝ և արծարծի։ ուստի երևի ոյժ իմն Կրակին՝ և Օդոյն։

Ուրեմն՝ ծըծումբն ունի յ'ինքեան յ'իւրում արգանդի բնաւորեալ՝ և միաւորեալ ոյժ Հրոյին՝ փուղձ, և խոնաւութի Սնդիկոյին՝ նայև աղ Հողոյին։

Գարշահոտ մուխն է 'ի տրհաս՝ յ'ա

յ'անեփ՝ 'ի խոշոր, և 'ի 'յաճելու-
ած հողային նիւթոյն։

Շնչահանք յ'երակածըծմբոյ
քա՛րշէն զանազան դեղորայս. ոչ
ծաղիկ, կաթն, իւղ՝ բարկ շունչ
ծծմբոյ, և այլ ինչ պիտանի։

Ծըծմբոյն գոյ այլևայլ ոյժ՝ և
զօրութի, ըստ այլ՝ և այլ տեսակ
ծըծմբոյ. քանզի՝ այլ իմն զօրու-
թի գոյ ոսկւոյ ծծմբոյն, այլ ար-
ծաթոյն, այլ՝ պղնձոյն, այլ՝ եր-
կաթոյն, և այլ՝ միւսոյն։

Ծծումբն զոմն սառնատեսակ
բիւրեղս 'ի պատուական ակունս
ներկէ. զարծաթն յ'այնպիսի
աստիճան բարձրացուցանէ, որ
կլայեկն ընդ համասար արծաթոյ
զփորձ մահաքքարին ցուցանէ՝
և յաղթահարէ։

Պղնձծըծումբն զպղինձն այնպէս
սրկէ, որ հրափորձին տևէ։

Կապարածծումբն զանագն 'ի
պողովատ. և անագածծումբն
զպողպատն յ'ազնիւ երկաթ կա-
րէ բարձրացուցանել։

Սնդկածըծումբն զնոյն զիպակն
կռանելի՝ և ձուլելի առնէ. նաև

մէ

**վերացուցեալ ընդ ժիպակի, լինի
ազնիւ Օնջուֆր։**

Ի ծծմբոյ յառաջանայ զառիկն՝
կամ սուսրն, թէ դեղնագոյնն,
որ Օրպիմէնթ ասի. թէ կար
մրագոյնն, որ Սանդարաք կոչի.
և թէ սպիտակագոյնն, որ խոկա
պէս զառիկ՝ կամ զառնիխ ասի։
Ամենայն զառիկական մարմին է
'ի անդկային աղէ՝ և 'ի ծծմբոյ,
որ յոյժ այրեցեալ է. ուստի ամ̃
զառիկական մարմին է թունալի։

## Յաղագս Մարքազիտ քարանց։

Որքան հրահալելի, նոյնքան
տեսակ մարքազիտ քարանցն։
Արդ՝ գոյ մարքազիտ ոսկւոյ՝ ար
ծաթոյ՝ պղնձոյ՝ երկաթոյ՝ և այլ
հրահալելեացն. ըստ որում տե
սանի 'ի գունոց մարքազիտայիցն՝
կամ մօրդասանգ քարանցն։
Կազմուած մարքազիտայիցն է 'ի
յոլով սպիտակ՝ և կարմիր, 'ի ծր
դեալ՝ յ'աղտեղեալ, և յ'աւե
րեալ ծծմբոյ. 'ի յոլով զառիկա
կան աղտեղեալ աղէ, և 'ի սակաւ
աղտեղի ժիպակէ. 'Ի մարքազի
տայ

տայից զարմանալի դեղորայս՝ և զարմանս գործեն Բժիշկք։

### Յաղագս Անթիմոնոյն։

ԱՆԹԻՄՈՆՆ՝ որ Աթիմադ՝ և դամուրքեսան ասի. զնոյն էուճ և կազմուած ունի, զոր մարքա_զիտք ունին. միայն թէ՝ Անթիմոնն աւելի ժիրակ ունի քանզ մարքազիտայն։

Կազմեալ անթիմոնն 'ի ծծմբոյ՝ 'ի կուպր ճարպոյ հողոյն՝ և 'ի յ'աւելութէ աղին. սատուտէ որ անթիմոնն դիւրաւ փշրի։

Անթիմոնն անուանի և ս կապար կամուրճիճ անկատար, յ'որում հալի. թէպէտ կապարն աւելի անդիկ ունի քան զանթիմոնն։

## Գլուխ Իններորդ։

### Յաղագս Կպրային՝ և Ջիւթային մարմնոց։

Բնութիւնն ընդարձակին բնութեն յ'արգանդի իւրում յառաջին ծէ զճարպ իւրն գիրութե և պարարտութեան. որ եթէ ընդ իւր

իւր ընածին աղին ոչ իցէ սևե
ռեալ՝ փոխարկի 'ի կուպր. իսկ
թէ իցէ սևեռեցեալ՝ 'ի ծծումբ
փոխարկի. իրաւ ասի թէ կուպրն
է՛ թոյլ ծըծումբ, իսկ ծծումբն
պինդ՝ հաստուն՝ և միծուն կուպր.

Ս՛ ուրեմն ձիւթն՝ կամ կուպրն
ծուծ գետ, սաստիկ ջերմ, իւղա
լի, դիւրաբորբոք՝ և հրադեսյ.
Այլևայլ ձիւթ գոյ ըստ այլևայլ
խառնուածոցն՝ յ'որս մերձենայ
գետ ծուծն. քանզի՝ եթէ ելանէ
ծուծն 'ի քարանց՝ ասի Քարա
ձիւթ. թէ յ'այրեցեալ ծծմբոյ՝
սևագոյն՝ և ծծմբահոտ ծորեալ
ելանէ, ասի Կուպր հողային. և
թէ 'ի յոյժ պարարտ՝ յ'իւղալի՝
և 'ի հրամերձ տեղեաց բղխէ, ա
սի Նաւթ. եթէ այնպիսի գետ
ծուծն ելանէ 'ի մաքուր ծովային
ծծմբոյ, և զօրութ՟բ օդոյն ընդ
արեգականն 'ի ծովեզերն փոխար
կի 'ի Քահրիբար. իսկ՝ թէ 'ի
ծծմբային լճից յ'երեսս ջրոյն ե
լանէ, փոխարկի 'ի Ձիւթ.

Գիտեա՛ սոտ բարւո՛ք. որքան
ձար

ճարպոյ՝ և պարարտութիւն գոյ 'ի
ծծումբն՝ յաղն՝ և 'ի մնդիկն.
նայև՝ 'ի կենդանի, և յանկեն-
դան նաւս. Նախնկնապէս այսմ
Կպրա-ձիւթեայ ճարպոյն ընձե-
ւի. որ սփռեալ՝ և ծաւալեալ
ընդ ա͞մերկրաւ գտանի։

## Պրակ Տասներորդ։

## Յաղագս Աղից։

Աղ (Յունարէն՝ Ալս. Լա-
թիներէն՝ Սալ։) է ծածուղ-
ղալի, 'ի ջրային՝ և 'ի հողային
նիւթոյ, զօրութ͞ք չորացուցիչ՝ և
կիզիչ ջերմութեանն ծնեալ.
Հողն նա՛խ չորութ͞ն՝ և ապայ
ցրտութ͞ն տիրէ աղին։
Աղից այլն է հասարակ, այլն ա-
ռանձին։ Հասարակ աղն կամ
է բնական՝ կամ արհեստական։
Աղն բնական ելանէ 'ի ծովու՝ և
'ի հողոյ, 'ի լճէ՝ և յաղբերէ, 'ի
գետոյ՝ և յաւազոյ. իսկ արհես
տական աղն լինի եփելով՝ չորա-
ցուցանելով՝ և կրացուցանելով
զէնթակյս աղիցն. որպիսիք են
ղալի աղն, միզի աղն, և աղբաղն,
Իսկ

Իսկ առանձին աղնէ՛ նաթրուն
աղն, սեւալեղն, պաղլեղն՝ նշա֊
դիրն, եւ զառիկն:

Յաղագս նաթրուն աղին:

Աղն այն, զո́րմէ ճառեմք ունի
զայլեւայլ անուանակոչութիւնս՝
ըստ այլեւայլ լեզուաց. այսինքն
նաթրուն. նիտրում. լիտրոն.
նիտրոն. բաւրակ. բօրա՝ եւ շօրա:
Աղս այս է հրային՝ եւ ծծմբային
ծուծ ուղղալի. գոյացեալ՝ ի կրպ
չութէ օդոյն, եւ 'ի խոնաւութէ
ջրոյն: քանզի՝ որպէս հասարակ
աղն 'ի խոնաւ՝ եւ 'ի խժոտ որակու
թենէ ջրոյն՝ եւ հողոյն յառաջե֊
կեալ, ոչ այլ ինչ է՛, եթէ ոչ՝ հո
ղային մասն այնր խժոտ՝ եւ խոնաւ
որակութե, որ 'ի ջերմութենէն
պնդանայ՝ եւ 'ի հասարակ աղ չո֊
րանայ. սոյնպէս՝ նաթրուն աղն
ոչ այլ ինչ է՛, եթէ ոչ՝ հրային՝ կամ
ծծմբային մասն՝ խժոտ եւ խոնաւ
որակութեան օդոյն՝ եւ ջրոյն, փո
խարկեալ 'ի նաթրուն աղ:
Արտուստ նաթրուն աղն ունի ա
ռանձնութի ծծմբոյ՝ եւ սնդկի. ը՟
հրոյ՝ եւ օդոյ. իսկ հասարակ աղն

զա

զառաւանելութիւն ջրոյ՝ և հողոյ ի հասարակ աղի հուրն՝ և օդն է գաղտնի՝ և անյայտ. իսկ ջուրն՝ և հողն յայտնի։ Բայց նաթրունի հուրն՝ և օդն է յայտնի. իսկ ջուրն՝ և հողն գաղտնի։

Այր աղագաւ՝ հասարակ աղն ոչ հրանոյ, և ոչ բոցանոյ. այլ՝ նաթրունն հրանոյ՝ և բոցանոյ։ Վասնզի յայտնի հողն՝ և ջուրն հասարակ աղին արգելուն զհրացումն. և որինչ հրայինն է՛ի հասարակ աղն, ընդ խոնաւին միացաւ. որպէս և՛ի նաթրունն աղն։

Մստին է, որ երկուքեան աղն թափանցանեն՝ և լուծանեն զմմ խխամարմին. և յորժամ փտին՝ լուծանին յ՛առաջնասերմնեայ աղն և՛ի նիւթն առաջին։

Մ՛սս նորբահայեաց Վ. իմիականաց որի մեծ՝ ազնիւ՝ խորին՝ և գաղտնի խորհուրդ։

Վասնզի նաթրունն աղի սառուցեալ ջուր՝ և սառուցեալ հուր։ Եթէ ոք ուշիմօրէն զխոտայ սև եռեւ և պրկել զնաթրունն աղն.

և

և ոսկեայ, կամ արծաթի գու-
նով գունաւորել. առնա գանձ
անպականս. աղբիւր անսպառ. և
'ի բազմաց խնդրեցեալ անգին
մարգարիտ :

Դ նաւթրուն աղէկ, կամ 'ի շօրայ
իւր. 'ի ծծմբոյ. և 'ի գործելեայ՝
(որ անձող կամ ածուխ ևս ասի :)
յօրինի, և կազմի հրային փոշին՝
որ գռեհկօրէն բարութ ձայնի :
Որոյ կազմուածն է այսպէս :

Հրային փոշի վասն մեծամեծ հրձիգ, հրա-
ցան՝ և թափանց մեքենայից, որ թօփ ասի :

| | | | | |
|---|---|---|---|---|
| Շօրայ | 100 : | կամ | 100 : | Լիտր, կամ |
| Ծծումբ | 18 : | | 15 : | դրէհամ, բու- |
| Գործելի | 20 : | | 18 : | տէլ, և այլն |

Վասն միջակ թափանց մեքենայից,
որ թօֆանգ ասի :

| | | | |
|---|---|---|---|
| Շօրայ | 100 : | կամ | 100 : |
| Ծծումբ | 18 : | | 15 : |
| Գործելի | 20 : | | 18 : |

Վասն փոքր թափանց մեքենայից, որ
դաբանչայ ասի :

| | | |
|---|---|---|
| Շօրայ | 100 : | 100 : |
| Ծծումբ | 12 : | 10 : |
| Գործելի | 15 : | 8 : |

Վասն Սևալեղին :

Սնճալեղի անուանքն այլևայլ

են

լեզուօք են, սեւակ. արջասպ՝ և զաջ՝ վիտրիօլում, խալկանթում և այլ։ Է ազգական պաղեղին՝ և է՛ 'ի ծծմբային չնչոյ, յ'ենթերկրեայ ջրոյ, 'ի պղնձեայ՝ յ'երկաթեայ ևս նիւթոյ. և կամ յ'երկաքանչիւրոյն 'ի միասին խառնել մարմնոյն։ որոյ կծու՝ և թթու լինիլն. նայև՝ կիզողական զօրութիւնն է 'ի ծծմբային չնչոյն։

Հոտութիւն, և պարզութիւն սեւաղեղին է յ'ենթերկրեայ ջրոյն. իսկ գոյնն՝ և համն է 'ի պղնձեայ, և յ'երկաթեայ նիւթոյն։

Վասնզի՝ կծու, թթու, և քացախ ծծմբային շունչն սեւաղեղին որով իւրաքանչիւր ենթերկրեայ ջուր ներկի. պատճառի 'ի զանգուածոյ'իմեքէ, որ անցեալ ընդ պղնձեայ՝ կամ երկաթի ենթերկրեայ խողովակս, հաշէ՝ մաշէ՝ և յ'ինքն քարշէ զայնքան մասն 'ի պղնձեղինացն, և յերկաթեղինացն. որքան է իւր կծու՝ թթու և բարկ զօրութիւնն. ուստի զկնի՝ ըստ բնաւորեալ ժամանա-

կին

կին, ջեռնուլն. յառաջանայ սեւ_ալուղն. որ ծնանի մանաւանդա_պէս 'ի Հրահանքարանց. որ չափ մախ դաշի ասի թուրքերէն:

Յաղագս Պղպեղին:

ՊՂՊԵՂՆ կոչի Լա_թիներէն պիպէր. Յունարէն բստիպտէրիա. Արաբերէն շաբ: Որպէս հասարակ աղն նմանի նաթրունին. սապէս պղպեղն ընդ սեւ_աղեղ աղին:

Գոյ յոգնադիմի շաբ, որ շաբ ա_պառումի՝ ծայրասուր՝ թեւնոր է:

Շաբն է աղութիւն 'ի ջրոց, 'ի տղմից՝ և յ'ապառած քարանց ժո_ղովեալ 'ի մի վայր. ջերմութբ, այլ և այլ եփմամբ, և լուացմամբ 'ի շաբ թանձրացեալ:

Գաղտնի զօրութբն շաբն է ջեր_մարար՝ մաքրիչ՝ սեղմիչ՝ և չորա_ցուցիչ: Ունի շաբն յոլովագին շահաւէտութիւնս. զի ծառայէ Պատկերահանից, Ներկարա_րաց, Դարբնաց՝ Ոսկերչաց, Խա_ղախորդաց՝ այս է Կաշեգործաց

Գրագրաց, Տպագրաց՝ և Գրոց կազմից. որով գունաւորի ամրանայ՝ և սերտանայ վերոգրեալ արհեստաւորաց ենթակայն։

## Գլուխ Մետասաներորդ։

### Յաղագս Հրաշալեացն.

ԱՍՏ 'Ի ՄԻՏ ԲԵՐ զորինչ՝ բազմիցս յառաջագոյն ասացաւ վասն գոյութեան սկզբնաւորութեանն. այսինքն, թէ՝ Ո՛չ ընդունակ գոյացութիւն է ծծումբ։ Հաստատութիւն՝ և կայուն գոյացութիւնն է աղ։ Հոգի՝ պարարտ փուղձ, և սոսնձանման խոնաւութիւնն է սնդիկ։

Խոնաւութիւն սնդկին 'ի մէջ ընդունակ ծծմբոյն, և հաստատութեան աղին է իբր շաղկապ իւր թուչուն ծծմբոյն՝ և կայուն աղին. կամ միաւորութիւն 'ի մէջ աղ մարմնոյն՝ և ծծումբ հոգւոյն. կամ սոսինձ 'ի մէջ թանձր՝ և նուրբ մարմնոցն։ Նշանելի է մասն. խժոտ՝ և թանձրակալթն խոնաւութիւն, և իբր բնութեան սոսինձն՝ ըստ զանազանութեան մարմնոց, զանազանապէս

մակարդի ըստ այնպիսի մարմնոց։
Ընդ այլս անմակարդ՝ և անարն-
դիկ․ ընդ այլս միջակորէն․ իսկ
ընդ այլս թանձրամածօրէն մա-
կարդի, և մրաւորի․ քեզ օրինակ։
Որով տղմացեալ հողն, որովհե-
տև անմակարդ՝ անմած՝ և իբր
անմնդիկ է, արտաքին՝ և սակաւա-
ւոր ջերմութ. իւիք դիւրաւ չըն-
չահանի, և 'ի հող չորանայ։
Իսկ՝ եթէ հողային փոշին խառ-
նեցեալ ընդ իւղալինութեոյ՝ լինի
մակարդ՝ և խառնուած ինչ օծուն՝
որ արտաքին, և սակաւաւոր ջեր-
մութ. իւիք ոչ դիւրաւ չնչահա-
նի՝ և լուծանի, թէ ոչ յաւելցես
զուժգին հուր՝ և ջերմութիւն
սաստիկ․ քանզի՝ հողային փոշին
է քաջ մածուցեալ ընդ իւղամա-
կարդ նիւթոյն։
Այս է պատճառն՝ զի փայտն, և
քարն հրով այրեցեալք՝ փայտն
'ի մոխիր՝ քարն 'ի կիր փոխարկի․
իսկ հրահալելին հրով հալեցեալ
հոսի՝ ծորի՝ ձուլի, և 'ի վայր հե-
ղանի։ քանզի փայտն՝ և այլամ
տնկականն, զօրով կիսամակարդ

սակս

սակս նուազութե՟ պարտուե՟ն, ունի առաւել փուղձ՝ և խոնաւութիւն ջրային. բայց քարն, գոլով առաւել մածուն քան զփայտն ունի սակաւ փուղձ, և խոնաւութիւն. իսկ հրահալելին զօրանայ պարարտ խոնաւութ՟բ, և փղձով՝ նաև՝ մասամբքն թանձրամածորէն մակարդի։ Աստի է ուրեմն՝ որ չնչունակ, և ծծմբեայ մասն զպնդել՝ և հաստատուն բաժինն տնկականաց, վասն պակասութե՟ գէր խոնաւին, 'ի մոխիր լուծանէ. զհաստատուն բաժինն քարանց, սակս գիրութե՟ ծծըմբոյն, 'ի կիր լուծանէ. բայց՝ պարարտ խոնաւութի հրահալելեացն հրով նօսրանայ՝ և առաւելեալ ուռձանայ. ոչ բաժանի, այլ՝ բոլորն հալի՝ և հեղանի։

Արդ՝ մերձնիւթ հրահալելեացն է ծծմբաղանդկեայ շունչն. զօրութեամբ երկնային, և ենթերկրեայ ջերմութե՟ն 'ի պայծառ ծծումբ անցեալ. ընդածին՝ և անզգալի չնչով աղին 'ի հողաղի փոխարկեցեալ՝ և չնչաւորութ՟բ

խո

խոնաւութեանն ՚ի հրահանգելիս սնուցեալ:

Հրահալելեաց ոսկի՝ և արծաթն ասին մաքուր՝ և եփուն մետաղ. կապարն՝ և անագն, երկաթն՝ և պղինձն անմաքուր՝ և սակաւէփ:

Ոսկին է փայլուն՝ քաղցր՝ ծանր՝ քաղցրաձայնակարդ՝ քաղցրափորձ՝ և քաղակռան մետաղ. ոչ երբեք զձեռս շօշափողայն գունաւորէ. ոչ մնասի քանակութըն՝ և ոչ փշրի. է կակուղ՝ լուածոյն, անժանկառ, հրատև՝ դեղին, ծանր՝ հնազանդ կռան, և թելաքաշի:

Արծաթն է պայծառ մետաղ. անմաքուր՝ և սակաւէփ քան զոսկին:

Պղինձն ունի զառատութիւն սև աղեր՝ և անմաքուր հողոյ:

Երկաթն՝ յանմաքուր, հողոյ լին, և յայրեցեալ ծծմբոյ. ընդ ամպաւ խոնաւութեան շաղեալ՝ այլ՝ ընդ հողային ընչոյ ոչ բարւոք մակարդեցեալ:

Անագն՝ կամ կլայեկն ունի զառաւելութիւն անմաքուր սնդկի. է սակաւէփ՝ և անկատար մետաղ:

Կապարն՝ որև արճիճ ասի, ունի

նի զբազմամասնեայ մրուր հողոյ՝ ջրոյ. սակաւերփ՝ և ոհաս մետաղ։

Ջ. րարծաթն (որ և՝ մնդիկ, ժիվայ՝ և զիպակ ասի.) է հեղուկ երակի 'ի մետաղական ջրոյ. կպուն հողայինն, քաջամանկարդ ընդ ծըծմբոյ՝ և շնչալի. ցուրտ՝ խոնաւ՝ և սպիտակ յ'արտաքուստ. ջերմ չոր՝ կարմիր, և ամենադոյն 'ի ներքուստ. թափանցանէ ընդ մետալս՝ զորս մերձենալովն լուծանէ. և է նիւթ ամ մետալից. զի պարանակէ զամենայն մետալս։

Գիտութիւն Մետաղական Երակաց։

ԵՐակ մետաղական երիւք ճանապարհօք ծանօթանայ. բնական, արհեստական՝ և ինքնամատոյց ճանապարհաւ։

Ի նախկինաւն ծանօթանայ երակ բրելեայն, նախ 'ի ձեռն շօշափեաց և գոլորշեաց հողոյն. երկրորդ 'ի նստուածոյ՝ և յ'որպիսութենէ լերանց՝ ծառոց՝ և խոտոց. երրորդ 'ի յայտնութենէ մետաղական ծըլից 'ի ձեռն անձրևոյ՝ և ջրհեղեղի. չորրորդ՝ 'ի գետոցէից, որք

բազ

բազմիցս զփշրանս՝ և զնշխարս ե-
րակաց սափրեցեալ բերեն:

Արհեստականաւն. չնչահանու-
թեամբ ջրոյ՝ ըստ Քիմիական
ձեռագործ արհեստի:

Ինքնամատոյց ճանապարհաւ.
նախ յ'արմատախիլն ծառոց. 'ի
հրկիզելն մայրեաց. 'ի տորելն վի-
մաց. յ'անկանելն՝ և 'ի վայր վայ
թելն գետոց: երկրորդ՝ 'ի ցելուլ
հողոյն. յ'երիվարաց էջն, կամ թէ
յ'այլ կենդանեաց: երրորդ՝ 'ի
գունաւորելն տերևոց որթոյն:

Որդ ուրեմն՝ ամենայն մետաղական՝ քրոյ
տկան, և բրական հանք ունին արտաքուստ
նշանս ինչ՝ Ուսումնասիրաց ևեթ գիտելի:
Քանզի՝ եթէ գագաթ լերանց 'ի Հարաւ-
կոյս խոնարհի. և ստորոտն 'ի Հիւսիս, ն-
շան է մետաղահանից. մանաւանդ՝ արծա
թոյ. որոյ երակն յ'Արևելից յ'Արև-
մուտս ձգտի՝ և տարածի:
'Ի լերանց, քարանց՝ և 'ի հողոց գունոյն.
քանզի՝ կանաչ գոյնն պատճառի 'ի պղնձե-
ղինացն. սեաւն՝ յ'ոսկւոյ, և յ'արծաթոյ.
ծիրանին՝ 'ի հրահան քարանց. լրթնագոյն
կամ կապտաշորթ գոյնն՝ յ'երկաթոյ, և 'ի
կապարէ. լուրջ և բաց կապոյտ գոյնն լինի
'ի սնդիկէն. մոխրագոյնն՝ 'ի ծծմբոյն:
'Ի ծծմբային հոտոյ ծանօթանան հանք՝ երբ
զքար լերանց զմիմեամբք հարեալ՝ և փըշ-
րեալ՝ հոտոտեսցես զհոտ ծծմբոյ:
Ամուլ լերինք անշուշտ են մետաղականք:

Ոա



# ՀԱՏՈՐ ԵՐԿՐՈՐԴ ԳՈՒՇԱԿՈԳԱԿԱՆ.

# ՁԻՐ ԻՄՆԷ

## ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ ԳՈՒՇԱԿԵԼՆ ԶԱՌԻ

դժուարահաս, և ապագայ իրողութեանցն. քանզի՝ ոչ են ըստ մերում իշխանութե՛ ապագայքն, այլ՝ միայն ընդ իշխանութե՛ ամենագիտին Աստուծոյ։ Այսց՝ Ամենաբարին ԱԾ, որ

Արասցուք զմարդն ըստ պատկերի մերում, և ըստ նմանութեան։ Ծնն. 1, 26:

ոմն Ինքնագոյ Անեղ Պատճառ՝ զարգեւեաց յ՚ինքենէ պատճառե-
ցեալ՝ և ըստ իւրում պատկերին նը-
մանեցուցեալ մարդոյն՝ ըստ կա-
րի, և չափու մարդկային բնութեն
զամ կատարելութիւնս, զորս ա-
մենաբարին անսահմանօրէն ու-
նի. այսինքն է. Ամենակարողն
ար

այլն ասի հարկաւոր՝ կամ հանդեր
ձեալ ապագայ. այլն՝ լոկ պատա
հական, և այլն՝ Թէական պատա
հական ապագայ։ Որեզ օրինակ

Հարկաւոր ապագայ է։

Յորժամ 'ի ծննդեան Լուսնոյն՝ Արե-
գակն՝ և Լուսինն 'ի միասին գտանին 'ի գլ
խոյ՝ կամ 'ի տուտն Վիշապին, հարկիւ
խաւարի արեգակն։ Եթէ 'ի լրմանն իցէ
հարկիւ լուսինն խաւարի։

Լոկ պատահական ապագայ է։

Յորժամ երեկոյ լինի, ասէք՝ պարզ լինիցի
զի կարմրացեալ է երկին։ Եւ առաւօտու՝
այսօր մրրիկ, զի շառագունի տրտմութե
եղ երկին։ Նայև՝ Յորժամ տեսանիցէք ամպ
ծագեալ յարևմտից, խկոյն ասէք՝ Թէ ան
ձրև գայ, և լինի այնպէս։ Եւ յորժամ հա
րաւ շնչեալ՝ ասէք Թէ, խորշակ լինի, և
լինի այնպէս։ Ղու 12, 54։

Թէական պատահական ապագայն է։

Եթէ 'ի Տիւրոս՝ և 'ի Սիդոն եղեալ էին
զօրութիւնքն, որք 'ի ձեզ եղեն, վաղու եւս
արդեօք և այլն։ Եւ՝ Եթէ 'ի Սոդոմ ե-
ղեալ էին զօրութիւնքն, որք 'ի ձեզ եղեն՝
ապաքէն կային եւս մինչև ց'այսօր։ Մատ. 11։

## Լիցի ուրեմն

Պրակ Առաջին։

Հիմն Տօմարական Գուշակութեան։

Հարկիւ ութ իրք մանաւանդա
կանք պիտանիան մեզ առ 'ի կեր
պիւ իւիք հաւանօրէն զիրաց տօ
մարականաց գուշակութի ինչ ե

լու

լուսանել. ոյ՝ չորք կէտք երկնից՝ յորս մտանէ արեգակն. և չորք նախընթաց ծնունդքն՝ կամ լըրմունքն Լուսաւորաց. և՝ իշխող՝ և տիրող տարւոյն, ամսոյն, շաբաթուն, աւուրն՝ և ժամուն։

Չորք կէտքն են, Գարնանային երկնամիջակն, Ամառնային ժամադարձակն, Աշնանային եթերակամն, և Ձմեռնային սու-
զականն ։

Չորք ծնունդք՝ կամ լրմունք Լուսաւորացն, որք անմիջապէս մերձ են մտիցն արեգական ՚ի վերոգրեցեալ կէտսն երկնից, այսին չորք նախընթաց ծնունդք՝ կամ լըրմունք Լուսաւորացն ։

Որոց անկանելութիւնն՝ է մեծի զգօնութեան և չքնաղիմաց հանճարեղութեան բան ։

Իշխօղք՝ և տիրօղք իւրաքանչիւր աւուր, տըւըն
ջեան՝ և գիշերոյ ։

## ԺԱՄՔ

Եօթն աւուրցն յառաջին ժամուն ։

| | Տէրընջեան ։ | Գիշերոյ ։ |
|---|---|---|
| ա ։ | Արեգակն ։ | Լուսնթագն ։ |
| բ ։ | Լուսինն ։ | Լուսաբերն ։ |
| գ ։ | Հրատն ։ | Երևակն ։ |
| դ ։ | Փայլածուն ։ | Արեգակն ։ |
| ե ։ | Լուսնթագն ։ | Լուսինն ։ |
| զ ։ | Լուսաբերն ։ | Հրատն ։ |
| է ։ | Երևակն ։ | Փայլածուն ։ |

Հետևեալ ժամուց իշխօղքն գըտանին ըստ կարգի մոլորականացն իւրաքանչիւր աւուր առաջին ժամուն

մուն. Թէ գիշերեայն՝ և Թէ ցե
րեկեայ ժամու իշխողքն։

Մնացեալ ժամանակաց իշխողն
հաստատագունօրէն գացի յառա
ջարկութ. Ձևակերպութեանն
երկոտասան տանցն երկնից. զոր
մէ կարճ՝ ի կարճոյ յիշեցաւ ըն
ռետորակի մերում, որ մակագրի
Ոսկեայ դուռն դպրութեան։
Տպեցեալ յԱմստրդամ. յԱմի
Տեառն 1699։ ըն ԹղԹոջ 48։
Թէ ՏՐ կամեսցէ՝ յայլում նու
ագի յածախօրէն գրեսցուք յա
ղագս երկոտասան տանց երկնից
Ձևակերպութենէն, և նորին
կիրառութենէն ևս։

## Գլուխ Երկրորդ։

Թէ որպէս Մարդն իցէ Փոքրաշխարհ։

ՀԻՆԳ գլխաւոր աշխարհք
համարին 'ի Զքնաղական՝ և
Ճշմարտաբան Փիլոսոփայից. ՟Ե
1. Նախատիպ՝ և անեղն։
2. Մեծ՝ և եղական աշխարհ։
3. Երկնային աշխարհ։
4. Ջրահող աշխարհ։

5. Է Քաղաքական աշխարհ.

Նախ. Մարդն նմանի Նախատիպ՝ և անեղ աշխարհի. որ է Ա͞Ծ.

Ա͞Ծ տիրէ՝ և իշխէ ընդհանուր աշխարհի:
իսկ մարդն՝ ընդհանուր երկրի:
Ա͞Ծ է անշօշափելի, անտեսանելի, անլսելի, անչափելի, և անմահ:
Նոյնպէս՝ և եղական հոգի մեր:
Ա͞Ծ ունէ զաշխարհս իմաստութեամբն:
և մարդոյ հոգին կառավարէ զիւր մարմինն գիտութեամբն:
Ա͞Ծ ունի զամենայն կատարելութիւնս ընդհանուր աշխարհի գերազանցօրէն:
մարդն ունի զնոյնս ըստ չափու:
Ա͞Ծ միաս գոլով զերիս ունի անձինս:
հոգի մարդոյ ևս միաս գոլով զերիս ունի կատարելութիւնս. Յի՝

կարողութի. իբր Հայր Ա͞Ծ:
իմաստութի. Որդի Ա͞Ծ:
սէր. Հոգին Ս͞Բ:

Ա͞Ծ է պարզ Շունչ՝ և սուրբ Ոգի:
իսկ մերս է թանձայեալ՝ և թանձրացեալ հոգի:
Եւ այլն ըստ այսմ սարասի՝ և համեմատութեան:

Երկրորդ. նմանի մարդն ընդհանուր եղական աշխարհի.

Ներքին զգայարանքն են իբր՝

դասք Հրեշտակացն մեծին Աստուծոյ։
Գլուխն՝ իբր հրեղէն կամարն։
Կուրծն՝ աստղալից կամարն։
Որովայնն՝ ջրահող երկիրս։

Ե՛րորդ։ Նմանի մարդն երկնային աշխարհի՝ այսպէս։

Ինն դասքն Հրեշտակաց. ինն արտաքին՝ և ներքին զգայարանք մարդոյն. հասարակ զգայութի̃, երևակայութիւն՝ մտածականութի̃, յիշողականութիւն՝ և հինգ արտաքին զգայարանքն։

Եօթն մոլորականքն երկնից. եօթն ծակք մարդոյ գլխոյն։

Քանզի՝ երևակն տիրէ աջ ականջի ծակին. Լուսնթագն՝ ձախ ականջին. Հրատն՝ աջ պնչի ծակին. Արեգակն՝ աջ յ'աչացն. Լուսաբերն՝ ձախ պնչին. Փայլածուն՝ բերանոյ ծակին. Լուսինն տիրէ ձախ աչաց որջոյն։

Դա՛րձեալ.

Սիրտ մարդոյն է իբրև Արեգակն։

| | |
|---|---|
| Ուղեղն. | Լուսին։ |
| Լեարդն. | Լուսնթագ։ |
| Փայծեղն. | Երևակ։ |
| Լեղին. | Հրատ։ |

Սեր

Սերմնաւոր անդամքն նմանին Լուսաւորերին։
Թոքն․ Փայլածուին։

Չորրորդ՝ նմանի մարդն ՚Դ՚ բա
հող աշխարհի․ այսպէս։

Շեկ մաղձ մարմնոյն․ Հուր։
Արիւնն․ Օդ։
Մաղասն․ Ջուր։
Սև մաղձն․ Հող։
Շնչական զօրութիւնն․ Բոյսք։
Զգայականն․ Անբան կենդանիք։
Երակք մարմնոյն․ Գետորեայք։
Փչիկն՝ կամ բուշտն․ Ծովք։
Ոսկերքն․ Քարինք։
Մազքն․ Մայրիք։
Ոջիլքն՝ և մլուկքն․ Գազանք մայրեաց։
Արտասուքն․ Ցօղ՝ և շաղ երկնից։
Փուքն․ Որոտ։
Թուքն՝ կամ տաղուն․ Ձիւն՝ և կարկուտ։
Իջուածք գլխոյն․ Անձրևք։
Թոքն․ Քամի։
Լերդն․ Ծովակ, և լիճ։

Նայև․

Ընածին ջերմութիւն․ Հուր։
Ընածին շունչն․ Օդ։
Ծորանն ընդածին․ Ջուր։
Միսն․ Հող։
Ծերութիւնն․ Ձմեռն։
Երիտասարդութիւն․ Աշուն։
Արիութիւնն․ Ամառն։

Տղա

գուշակ, արուեստն ամենաշնչաւորաց։
Ա՛հա քեզ առ իթ սքանչանա
լոյ ՚ի վերայ անհաս ամենա
բարութեանն, և անբովան
դակելի ամենիմաստութեանն Ա
ստուծոյ. որ՝ գոլով ինքն անհաս
միայն, և եռեակ, զամ՟ստեղծու
ածս իւր հաղորդս արար իւրոյ
անճառ միասնականութեանն՝ և
անբաւ երրեակութեանն։
Ո՛ անճառելի Լոյս. ընդ միգա
պատ խորանաւ, և յաւիտենակա
նութեան խաւարամած ջրոցն ծած
կեցեալ. լուսաւորեա՛ զխաւարա
ցեալ միտ անարգ ծառայս՝ և փո
շւոյս. որ յ՚անդունդ անբաւու
թենդ մատչիլ համարձակիր։
ԶԻԱ՛ՐԴ՝ միասնութիւնն
ընդ բազմութեան համաձայնի։
Կամ զիա՛րդ՝ բազմութիւնն յա
ռաջագոյն յ՚անբաւ, յ՚անո
րիշ՝ և յ՚անորոշ միութենէն։
Կամ զիա՛րդ՝ բնութի՛ միասնա
կանն սփռի, տարածի, և բնակի
՛ի բնութի՛ բազմաւորականսն։

Խորին Խորհուրդ. Ճառ եւ անշուշտ Ճշմարիտ. ըստ Պ·բոց:

Ո՞չ գիտէք, եթէ Տաճար էք Աստուծոյ՝ եւ ՈԳԻ Աստուծոյ բնակեալ է ՚ի ձեզ: Պօղոս առ 1 Կոր. 3. 16: եւ յայլուրեք: Աստուածեղէն բնութեանն լինիցիմք հաղորդակիցք: 2 Պետ. 1. 4:

Ասաց ոմն ՚ի Հնոցն:

Բնութիւնն բնութբ զուարճանայ:
Բնութիւնն զբնութիւն յաղթէ:
Բնութիւնն բնութեան տիրապետէ:

Միւսն եւս ասաց:

Երկին վեր. երկին վայր:
Աստեղք վեր. աստեղք վայր:
Որ ինչ վեր. նոյն ինչ վայր:
Զայսոսիկ կա՛լ՝ եւ յաջողեսցիս:

Եւ Զարադէս ասէ:

Ընդ ծայրս, եւ ընդ ծագս երկրի ծաւալեցեալ ճառագայթէ Երրեակութիւն, որոյ սկիզբն է Միութիւն. Աղբիւր աղբերաց, եւ ամենայն աղբերաց:

# ԱԿՆԱՐԿՈՒ ԹԻՒՆ ՄԻԱՍՆԱԿԱՆՈՒ Թեան, եւ Երրեակութեան:

Միասնականութիւնն է աղբերակն ամ֊ բազմացեալ թ՛ւոց. զի բազմութիւնն յառաջանայ ՚ի միութենէն. որպէս ձեւն ՚ի կիտէն, եւ

և անուամբ ձևն ՚ի միջակիտէն:
Միասնութիւնն տարածեալ ՚ի բազմութիւնն՝ ոչ ինչ կերպիւ համաձայնի ընդ բազմութեանն եթէ ոչ՝ համաձայնութեամբ միանութեանն, որ յածեալ գտանի ՚ի բազմութիւնն:

1. ՄԻԱՍ գոլով անեղն Աստուած. զեռեակ անձնաւորութիւն ունի անճառելի:

2. Սկիզբն մարդաստեղծութեան էր մի միայն Ադամ. յերկուս տարածեցաւ Նոյիւ. յերկոցունցն հաբէլ զերրեակութիւն մարդկան ծննդեան ելից. և մնալով մնայ այսպիսի երրեակութիւն յորդւոց յորդիս. ՚ի հայր՝ մայր և յորդի:

3. Միտս է նմ եղեալ մարմին. բայց ունի զերիս յատկութիւնս գ, սկիզբն՝ մէջ՝ և վերջ:
զեռադիմի մեծութի. երկայնութի, խորութի, և լայնութի:
զեռադիմի սկիզբն. պակասութիւն, կերպ՝ և նիւթ:
զեռադիմի ժամանակ. ներկայ անցեալ՝ և ապառնի:

4.

4. Ո՞րքան է մարդն. զերեակ զօ-րութիւն ունի, բանական՝ զգայա-կան, և տնկական:
5. Ո՞րքան հոգի մարդոյ. ունի զե-ռեակ ոյժ, միտ՝ յուշ՝ և կամ:
6. Ո՞րքան դատաստանն. զերկու գլուխս ունի, Թիւ՝ կշիռ՝ և չափ:
7. Ո՞րքան ծառն՝ ի յոլովադիմի ոստս յածեալ՝ զերկու ինչս յա-ռաջբերէ. զարմն՝ ծաղիկ, և զ-պտուղ: և միայն մրգն. ունի զհամ, հոտ՝ և զգոյն:
8. Ո՞րքան աշխարհ. զերկու դարս ունի, այսինքն՝ բնութեան օրինաց և շնորհաց:
Ի միասնականութենէն յեռեա-կութիւն յածեալ. յեռեակութե-նէն յեօթնեակութիւն յառաջեալ՝ զանճառելի խորին խորհուրդս գտցես. նոյն՝ գտցես զիրամա-ցեալ գոլ պատգամն.

ՈՐԻՆՉ ՎԵՐ. ՆՈՅՆԻՆՉ ՎԱՅՐ:

Մարդն ևս քրաճարար փոքրաշ-խարհ ասի. որ է Յունարէն ՄԻԿՐՈԿՈՍՄՈՍ:
Բ. անգլ՝ ունի յատկութիւն Նա-
խա

խաւարի, Երկնային, Դրահող՝ և Քաղաքական աշխարհին:

Բայց՝ ըստ բարեկարգութեան՝ և բարեձևութեան կանոնին:

Եւ բարեկարգութե կանոնն է.

Նախ. հնազանդ լինիլ կամացն ԱՅ:

Երկրորդ. ըստ բանականութեանն կեն ցաղավարիլ:

Երրորդ. զանձն իւր ուղղել:

Չորրորդ. զմիւ տուն կառավարել:

Հինգերորդ. զմիւ միաբանութիւն ըստ կանոնին կարգադրել:

Վեցերորդ. միտս գեղջ կանոնադրել:

Եօթներորդ. զմիւ միայն քաղաք ընդ ուղ ղութեամբ ածել:

Ութերորդ. գաւառի միոյ բարեձևու թեամբ առաջնորդել:

Իններորդ. զմիակ իշխանութի սանձել:

Տասներորդ. զթագաւորական իշխանու թիւնն վարել: Եւ զայսոսիկ բանիւ՝ և արդեամբք. Այսոյ յԱստուա ծային յառիլ՝ և մերձենալ:

## Գլուխ Երրորդ:

## Գուշակութիւն զերկնային աշխարհէն:

### Յաղագս Եօթն Մոլորականացն:

Արեգակն է իբր հուր՝ի հրոյ յառաջեալ, և հրոյ բաշխիչ. որ ընդ մարդոյն ծնանի զմարդն: Տես. որինչ գրեցաւ ըն գրքոյ մերում. որ մակադրի.

Նա

Համաձայնութիւն Հնդետեսակ ամսոց·
Մասն եօթն մոլորականացն · և
երկոտասան կենդանակերպիցն ։
Արեգակն է իբր Թագաւոր, և
ուղղաւորիչ մոլար աստեղաց · զի
ունի զազդուարարս ՚ի զայլսն ։
Սորա օրն է կիրակի · ցերեկեան՝
և երեկոյեան առաջին ժամն ։
Թէ կաղանդն, կամ Նոր տարւոյ
առաջին օրն ՚ի կիրակի հանդիպի
Ձմեռն լինի սաստիկ ցուրտ · գա
րունն՝ բարեխառն · ամառն չոր,
և սակաւաւորութ · աշունն՝ հողմա
շատ ։ Ոճիկն առատ · այսինքն՝
գարի, ցորեան, գինի, ձէթ, և
մեղր · ոչխար՝ և անդեայք ։
Փաքսութիւն ՚ի մէջ ազնուաց,
և քսութիւն ընդդէմ մեծամեծաց ·
մահ տղայ և մանկայ մարդաց ։
Ծնեալն ընդ իշխանութեամբ արե
գական լինի մսեղ · շառագոյն ։ մի
ջակաբերան · յարմարակզակ ։ ա
չեղ · յարմարաքիթ · միջակապը
ռունգ · լայնաձակատ · կարմրայտ՝
բարակունք, և դեղեցկադէմ ։
Բարուքն ծանր · համեստ · առա
տասիրտ · խորախոհ · պատուասէր

բաց

քաղդըրաբան, նայև մեծասիրտ. Լատինն լեզուաւ սոլ. Արաբերէն շամս. Պ. Հասի չեմշէ. Ղփտերէն պիրրի. Հաբաշերէն ծահայ. Վրացերէն մզէ: Ռուսերէն սօլնցէ և Հոռմերէն Հէլիոս ասի:

Լ Լուսինն ունի զանազան արարս մասնաւանդ յ'աճիլն, և 'ի նուազիլ նոյն լուսնոյն. որ անուանի Լատիներէն լունա. Յունարէն սէլինի. Արաբի ղամար. Ղփտերէն պէօհ. Եթովպերէն ճարաքա. Վրացերէն մթուարէ. Ռուսերէն լունա, և Եբրայեցերէն լեբանահ:

Եւ է որք 'ի նուազիլ լուսնոյն՝ գերան, տախտակ՝ և զայլ փայտեայ գործիս հատանեն, պահելոյ սակս լինելի մնացական. բայց թէ՝ իցէ 'ի յ'աճիլն, դիւրափուտ: Նոյնպէս՝ վնասական համարի, յ'աճման լուսնոյն զկենդանիս կրտելն զարմտիս հաւաքելն, զուգակցութիւն ամուսնացելոյն՝ և այլ սոյինն նման առք, և արարք. Իսկ 'ի լրմանն՝ շահական՝ և պիտանի: Որ լուսնոյն է երկու շաբաթ՝ և նոյն աճուր ցերեկեայ, և գիշերեայ

րեայ առաջինն ժամն ։ Թէ տարւոյ կողմնդն յ'երկու շաբաթի հանդիպի․ ջուրն ոչ պակասի․ ձմեռն բարեխառն ։ գարունն զովական․ ամառն միջակ՝ և աշնիւ․ աշունն յոյժ խոնաւ ։ Ցորենոյ պակասութի․ այլ սերմանց առատութի․ գինի՝ և ձէթ միջակ․ սարսռելինուաղութի անասնոց․ հիւանդութի մարդոց․ փեռեկտութիւն 'ի մէջ մեծամեծաց․ արգանդացաւ կանանց․ պակասութիւն ապրշմի՝ և մեղեր ։

Ծնեալն ընդ իշխանութե լուսնոյն լինի սպիտակամարմին․ մաղասոտ․ նեղակզակ․ բոլորադէմ․ ատամնայարմար․ միջակաչեայ․ քընափ․ փոքրաբերան․ գաղտերիկ հաստաթիկունք․ յամրաշարժ․ երկայնաբազուկ․ սպիտակամազ․ լայնաճակատ․ նստաքիթ․ բայերես․ փոփոխական․ դիւրահիւանդ երկրասէր․ ջրասէր՝ և վաւշտ ։

Եթէ ոք ցանկայ վերահասու լինիլ թէ յ'ո րումկիտի լուսինն ծնունդ առնու ։

Լից զըմպանակ մի արծաթեայ ծովու ջրով և արկ 'ի ջուրն ձիթենեաց մոխիր․ յ'որ ժամ լուսինն նորի՝ խառնեալ գալարի մոխիրն, և պղտորի ջուրն ։

Պատճառ սորին է. զի լուսինն լինի 'ի վե-
րայ արծաթոյն. ձիթենեաց. ծովու. և
այլ ամ ջրոց, և ջրային իրաց ։

Եթէ եղջիւրք լուսնոյն յ'արև-
ելս հայիցին՝ է նոր լուսինն. իսկ թէ
յ'արևմուտս հայի՝ է հին։

Բայց թէ կամիցիս գիտել՝ լու-
սինն յ'որում կենդանակերպի է
կամ զքանիս լուսնոյն յ'որում ա-
մի, կամ ամսի և իցես. և մուտ յա
ռաջակայ աղիւսակս. և գտցես
անսխալ. իսկ՝ զօր ծննդեան լուս
նոյն մի համարեր, այլ՝ յ'երկրորդ
օրէն թուեա։ Բեր օրինակ.
Յամի Տեառն 1702. սեպտեմ
բերի 13, լուսինն է 4. բայց դու
կամ զերեք, և մուտ 'ի խորանսն
աղիւսակին. և գտցես լուսինն
գոլ 'ի կարիճ կենդանակերպին։

Հետևի կենդանակերպացոյցն։

| Քանեք. Լ | Յունվարի | Փետրվ. | Մարտի | Ապրիլի | Մայիսի | Յունիսի |
|---|---|---|---|---|---|---|
| 1 | Ջրհո | Ձու | Խոյ | Ցու | Երկ | Խեց |
| 2 | Ջրհո | Ձու | Խոյ | Ցու | Երկ | Խեց |
| 3 | Ձուկ | Խոյ | Ցու | Երկ | Խեց | Առ |
| 4 | Ձուկ | Խոյ | Ցու | Երկ | Խեց | Առ |
| 5 | Ձուկ | Խոյ | Ցու | Երկ | Խեց | Առ |
| 6 | Խոյն | Ցու | Երկ | Խեց | Առ | Կոյս |
| 7 | Խոյն | Ցու | Երկ | Խեց | Առ | Կոյս |
| 8 | Ցուլ | Երկ | Խեց | Առ | Կոյս | Կշիռ |
| 9 | Ցուլ | Երկ | Խեց | Առ | Կոյս | Կշիռ |
| 10 | Ցուլ | Երկ | Խեց | Առ | Կոյս | Կշիռ |
| 11 | Երկ | Խեց | Առ | Կոյս | Կշիռ | Կար |
| 12 | Երկ | Խեց | Առ | Կոյս | Կշիռ | Կար |
| 13 | Խեց | Առ | Կոյս | Կշիռ | Կար | Աղե |
| 14 | Խեց | Առ | Կոյս | Կշիռ | Կար | Աղե |
| 15 | Խեց | Առ | Կոյս | Կշիռ | Կար | Աղե |
| 16 | Առի | Կոյս | Կշի | Կար | Աղե | Այծ |
| 17 | Առի | Կոյս | Կշի | Կար | Աղե | Այծ |
| 18 | Կոյս | Կշի | Կար | Աղե | Այծ | Ջրհ |
| 19 | Կոյս | Կշի | Կար | Աղե | Այծ | Ջրհ |
| 20 | Կոյս | Կշի | Կար | Աղե | Այծ | Ջրհ |
| 21 | Կշիռ | Կար | Աղ | Այծ | Ջրհ | Ձու |
| 22 | Կշիռ | Կար | Աղ | Այծ | Ջրհ | Ձու |
| 23 | Կարի | Աղ | Այծ | Ջրհ | Ձու | Խոյն |
| 24 | Կարի | Աղ | Այծ | Ջրհ | Ձու | Խոյն |
| 25 | Կարի | Աղ | Այծ | Ջրհ | Ձու | Խոյն |
| 26 | Աղե | Այծ | Ջրհ | Ձու | Խոյ | Ցու |
| 27 | Աղե | Այծ | Ջրհ | Ձու | Խոյ | Ցու |
| 28 | Այծ | Ջրհ | Ձու | Խոյ | Ցու | Երկ |
| 29 | Այծ | Ջրհ | Ձու | Խոյ | Ցու | Երկ |
| 30 | Այծ | Ջրհ | Ձու | Խոյ | Ցու | Երկ |



| Քանակ Լ. | Յուլիսի | Օգոստ. | Սեպտեմ. | Հոկտեմ. | Նոյեմբ. | Դեկտեմբ. |
|---|---|---|---|---|---|---|
| 1 | Առւ | Կոյս | Կշռ | Կար | Աղն | Այծ |
| 2 | Առւ | Կոյս | Կշռ | Կար | Աղն | Այծ |
| 3 | Կոյս | Կշռու | Կար | Աղ | Այծ | Ջրհ |
| 4 | Կոյս | Կշռու | Կար | Աղ | Այծ | Ջրհ |
| 5 | Կոյս | Կշռու | Կար | Աղ | Այծ | Ջրհ |
| 6 | Կշռու | Կարի | Աղ | Այ | Ջրհ | Ձու |
| 7 | Կշռու | Կարի | Աղ | Այ | Ջրհ | Ձու |
| 8 | Կարի | Աղն | Այ | Ջրհ | Ձու | Խոյն |
| 9 | Կարի | Աղն | Այ | Ջրհ | Ձու | Խոյն |
| 10 | Կարի | Աղն | Այ | Ջրհ | Ձու | Խոյն |
| 11 | Աղն | Այծ | Ջրհ | Ձո | Խոյ | Յու |
| 12 | Աղն | Այծ | Ջրհ | Ձո | Խոյ | Յու |
| 13 | Այծ | Ջրհ | Ձո | Խոյ | Յու | Երկ |
| 14 | Այծ | Ջրհ | Ձո | Խոյ | Յու | Երկ |
| 15 | Այծ | Ջրհ | Ձո | Խոյ | Յու | Երկ |
| 16 | Ջրհ | Ձու | Խոյ | Յու | Երկ | Խեց |
| 17 | Ջրհ | Ձու | Խոյ | Յու | Երկ | Խեց |
| 18 | Ձու | Խոյ | Յու | Երկ | Խեց | Առ |
| 19 | Ձու | Խոյ | Յու | Երկ | Խեց | Առ |
| 20 | Ձու | Խոյ | Յու | Երկ | Խեց | Առ |
| 21 | Խոյ | Յուլ | Երկ | Խեց | Առ | Կոյս |
| 22 | Խոյ | Յուլ | Երկ | Խեց | Առ | Կոյս |
| 23 | Յու | Երկ | Խեց | Առ | Կոյս | Կշռու |
| 24 | Յու | Երկ | Խեց | Առ | Կոյս | Կշռու |
| 25 | Յու | Երկ | Խեց | Առ | Կոյս | Կշռու |
| 26 | Երկ | Խեց | Առ | Կոյս | Կշռու | Կարի |
| 27 | Երկ | Խեց | Առ | Կոյս | Կշռու | Կարի |
| 28 | Խեց | Առւ | Կոյս | Կշռ | Կար | Աղն |
| 29 | Խեց | Առւ | Կոյս | Կշռ | Կար | Աղն |
| 30 | Խեց | Առւ | Կոյս | Կշռ | Կար | Աղն |



ՊԻՍ ուշակութիւն յ՚որքանութեանէ լուսնոյն։ Թէ որպիսի՛ իցէ ծնեալն. այս, կամ այն հիւանդացեալն. զերակ թողուլն՝ կամ զարիւն յուզելն։

ԼՈՒՍՆՈՅ յ՚առաջին աւուր ծընեալն լինի կարճակեաց։ Հիւանդացեալն երկբայի յ՚աւուրս 14, 21, և 28. յետոյ առողջանայ։ Զերակ թողուլն դժնդահարէ։

Յ՚Երկրորդում աւուր ծնեալն՝ երկայնակեաց. հիւանդացեալն՝ մինչև 12 օրն երկմիտ, յետոյ լաւանայ. զարիւն յուզելն բերէ՝ և պատճառէ զանձն։

Յ՚Երրորդում աւուր ծնեալն՝ կարճակեաց. հիւանդացեալն՝ տագնապի, բայց յետոյ առողջանայ. զարիւն թողուլն վնասէ։

՚Ի Չորրորդումն՝ ծ, թոյլ. հ, մինչև ՚ի 21 օր տագնապի, ապա լաւանայ. ար՝ միջակ։

՚Ի Հինգերորդումն՝ ծն, ապայ մեռանի. և հիւ, երկարանայ՝ ապայ լաւանայ. ար, քարոս առնէ։

՚Ի Վեցերորդումն՝ ծն, ցաւագար. հիւ, մերձ հեռանալ անմոյն հինգերորդ աւուրն պարզի. արիւնն շահաւէտ։

Յ՚Եօթներորդումն՝ ծն, երկայնակեաց. հիւ, երկմտի. ար, վնասէ։

Յ՚Ութերորդումն՝ ծն, յ՚երիտասարդութեան մեռանի. հիւ, զենի 14 աւուրց մահաւիթ. ար, վնասէ։

Յ՚Իններորդումն՝ ծն, թուլամարմին. հիւանդն տագնապի՝ և լաւանայ. ար, քառոռէ զմարմինն։

՚Ի Տասնումն՝ ծն, երկայնակեաց. հիւա,

մահ

մահաուիթ. որ, դեղնացաւութիւն բերէ:
'Ի մետասանորդումն ծնեալ, վտանգահոծ.
հիւ, յ'երկու աւուրս պարզի. որ, մեռա:
12* ծն, միջակակեաց. հիւ, զկնի 15 աւ
ուրց մահաուիթ. որ, կարի շահաւէտ:
13* ծն, կեցցէ. հիւ, 'ի 18 երրորդում աւ
ուր վտանգի. որ, մեռանէ:
14* ծն, տկար. հիւ, 15 օր վտանգի, յե
տոյ պարզի. որ, հիւանդութիւն բերէ:
15* ծն, երկայնակեաց. հիւ, զկնի չորից
աւուրց մահու վտանգի. որ, շահաւէտ:
16* ծն, առոյգ. հիւ, յետ 28 աւուրց ա
ռողջանայ. որ, մնասակար:
17* ծն, առոյգ. հիւ, յետ 18 աւուրց լա
ւանայ. որ, մեռա:
18* ծն, երկբայ. հիւ, զկնի 3 օրն լաւա
նայ. որ, շահաբեր:
19* ծն, անոյժ. հիւ, զկնի 3 աւուրց լա
ւանայ. որ, հիւանդութիւն բերէ:
20* ծն, յաղթանդամ. հիւ, զկնի 7 օրէն
վտանգի մահու. որ, մեռա:
21* ծն, երկբայակեաց. հիւ, 'ի տասներ
որդում աւուր հետեւեալ ամսոյն առողջա
նայ. որ, շահաբեր:
22* ծն, միջակեկեաց. հիւ, յ'առաջնում
աւուր հետեւեալ ամսոյն լաւանայ. արիւն
յուզելն է շահաբեր:
23* ծն, տկար. հիւա, զկնի 12 աւուրց է
առիթ մահու. որ, շահ:
24* ծն երկբայակեաց. հիւ, առողջանայ.
արիւն թողուլն է շահ:
25* ծն, թուլամարմին. հիւ, յետ ութ
աւուրց հետեւեալ ամսոյն պարզի. որ՝ շահ:
26* ծն՝ և. հիւ, վտանգահոծ. որ, շահ:
27* ծն, միջակակեաց. հիւ, 10 օրէն յետ
վտանգի մահու. որ, մեռա:
28* ծն, միջակեկեաց. հիւ, յ'առաջնում
աւ

աւուր հետեւեալ ամսոյն պարզի. զարիւն յուղելն, կամ զերակ Թողուլն վնասակար։ 29, և 30* Ծնեալն լինի վատոյժ. Հիւանդացեալն վտանգահոծ. արիւն վնաս։

ՀՐԱՏՆ պատճառէ զանազան փոթորիկս, սառնամանիս, ալէկոծութիւնս, և զայլ օդային պղտորութիւնս. երբեմն՝ և սաստիկ ջերմութիւնս, ծանր հիւանդութիւնս. և շարժէ զանձինս ՚ի խռովութիւն, վիճաբանութիւն, յապստամբութիւն՝ յարեանհեղութիւն, և յայլ բազմատեսակ թշնամութիւն։

Հրատի օրն է երեքշաբաթ. և նոյն աւուր ցերեկեան՝ և երեկոյեան առաջին ժամն։

Թէ Կաղանդն յերեքշաբաթի հանդիպի Ձմեռն լինի ցրտոյին անձրևային, խաւարչուտ՝ և շատ ձիւն. գարունն գիջային. ամառն ջէր. աշունն չոր։

Առաջակայ տարին լինի ծովու ալէկոծութիւն. նաւաբեկութի. նուազութիւն ցորենոյ՝ և այլ արմտեաց. միջակութիւն մեղուի՝ ձիթոյ, և մրգաց. առատութիւն մս

շի

չի, և հունդ սերմանց. պակասու
թիւն գինւոյ. մահ մանր կենդա
նեաց, նայև իգաց առաւել հիւ
անդութիւն և մահ, քանզի ա
րուաց. Երբեմն թէ՝ ոչ սակաւ ազ
նուապատիւ ոմք մահուամբ ըզ
կեանս փոխեցեն ։

Ծնեալն ընդ իշխանութբ Հրա
տին լինի թխամարմին, շառատե
սիլ, ոլոր և փոքրամազ, հրաչեայ
մեծապինչ, սակաւամորուք, և ան
յարմարատամն. սրտմտօղ, չարա
բարոյ, չարահնար, չարախնդաց,
լեզուանգար, կամապաշտ, թերա
հաւատ, արեանարբու, հոլանեալ
ամբարտաւան, իգամոլ, խաբե
բայ, սուտերդմնեայ, անգութ, յա
փշտակող, վրդովիչ, թշնամի խա
ղաղութեան, և անյագ՝ ի վնասահա
րութենէ ։

ՓԱՅԼԱԾՈՒՆ է այ
լայլուն, փոփոխական, և երկա
մնակ. Ը բարւոյն՝ բարեբարոյ,
ընդ չարին՝ չարաբարոյ ։
Աւուրն է չորեքշաբաթ. ժամն՝
նոյն աւուր առաւօտեան, և երե
կոյ

կոյեան առաջին ժամն՝ և ոհմն։

Եթէ կաղանդն 'ի չորեքշաբաթի հանդիպի, Դժմար ձմեռն լինի՝ բայց ոչ սաստիկ ցուրտ. գարունն գէջ՝ և ոչ գովելի. ամառն՝ քաջ ջեր՝ և ազնիւ. աշունն՝ բարե-խառն. միջակ ցորեան՝ և այլ-հունդք. կութ գինւոյ՝ ձիթոյ, և մեղեր առատ. 'ի տեղիս տեղիս սղութիւն առնկոց. երեւի թէ յ'աշխարհն իցէ մահ գլխաւոր ա-րանց, խելառութիւնք՝ կաղացա հուլթիւնք, գլխացաւութիւնք, վիժանք՝ և նոր համբաւք։

Ծնեալն ընդ իշխանութե փայ-լածուին մաղասամակարդ լինի, ծանր՝ և փափկամարմին. ունայ-նախոհ. երկրաւէր. քաղցրախօս՝ յօժարածիծաղ. մարդելոզ. հր-պարտ՝ սրտասաց. խորամանկ. նե-ղաձիկաս. երկայնմտունք. սևաչեայ՝ յարմարադէմ. նեղաքիթ. հա-տաշուրթն. յարմիրակզակ՝ և ծի-րօղ ակ զգեստուց։

ԼՈՒՍՆԹՐԳՆ տարա-ձեւէ բարեկամութիւն. խաղա-ղու

ղութիւն. հանդարտութիւն՝ և ջերմեռանդութիւն՝ մանաւանդ ՚ի մանկութեան հասակի:

Աշխէ՛ ՚ի վերայ խոհեմ, համեստ՝ ամօթխած՝ ներհուն՝ ազատաբարոյ՝ զուարճամիտ, և բարեպաշտ անձանց:

Սորա օրն է՛ հինգշաբաթ. ժամն նոյն աւուր առաւօտեան՝ և երեկոյեան առաջինն. Կաղանդի օրն եթէ հինգշաբաթի հանդիպի. ձմեռն անոյշ. գարունն հողմոտ. ամառն ցանկալի. աշունն անձրևային: Առատութիւն ցորենոյ, ռոճկի՝ մրգաց՝ արմտեաց՝ գինւոյ և ձիթոյ:

Ծնեալն ընդ իշխանութեամբ Լու֊ նթագին՝ լինի գեղեցկահասակ՝ կարմրախայտ՝ փափկամիտ՝ հաստաերակ, բարեձև՝ միջակամատնեայ գորշահեր; մեծաճակատ՝ մեծաբերան՝ մեծակոկորդ՝ հաստաքիթ֊ սևաչեայ՝ առատամտախոհ՝ լայնածնոտ լայնակուրծ և լայնաթիկունք:

Բարուքն լինի հնազանդ՝ համեստակենցաղ՝ բարեհաճոյ, անպատիր՝ հաւատարիմ, ժուժկալ՝ ըն

դունակ ամբարեց՝ և հնձարոյ։

ԼՈՒՍԱԲԵՐՆ որ և
Գ՝ իշխերավար ձայնի. իշխէ՛ ի վե՛ր
կանանց՝ երբ խայծ՝ երաժշտաց,
բարեբխտ՝ և շարժրուն անձանց։
Օրն իւր է ուրբաթ. ժամն՝ նոյն
աւուր առաւօտեան, և երեկոյի
առաջինն։ Թէ կաղանդն յ'Ուր
բաթի հանդիպի՝ ջուրք ոչ պակա
սին. ձմեռն ծանր՝ և սաստկու
թեան ցրտոյ. գարունն հողմոտ.
ամառն գէջ՝ և անոյշ. աշունն մա
սամբ չոր, մասամբ հողմակոծ՝ և
անձրևային։ Ապրուստն առատ
թէև՝ ծանրագին. կութն շատ և
լաւ. երբեք նշան աչացաւութե.
ծանր տագնապ մեծամեծն՝ և պա
տուականն անձանց. տարաձայնու
թիւն յ'այլև այլ կողմունս եղի.
'ի տեղիս տեղիս գետնաշարժութի։
Ինչ սորին իշխանութե ծնեալն
լինի բարձրահասակ, զուարթե
րես՝ աչեղ՝ ծիծաղադէմ, հերա
տարած, և արձակաքիթ։
Բարուքն ճարտարաբան՝ խոհեմ
գթոտ՝ սիրելի, համեղախօս՝ զբօ

սա

սասանէր՝ իգասէր՝ և տռփածան։

ԵՐԵՒԱԿՆ պատճառէ զերկս՝ և զաշխատանս, սով՝ և զ մահ, զանձկութիւն զամերածու թիւն՝ և զապցինասարաս Թշուա ռութիւնս։ Տիրէ 'ի վերայ ծե րոց՝ անկելոց՝ առանձնացելոց՝ զօ շաքաղ՝ վաշխակեր՝ կախարդ՝ գը ծուծ՝ և մտայոյզ անձանց։

Որն սորա է շաբաթ. ժամն՝ ա ռաւօտեան՝ և երեկոյեան առա ջինն։ Կաղանդ տարւոյն Թէ հան դիպի յ'աւուր շաբաթու՝ չորու Թիւն՝ և սղութիւն. ձմեռն եր կար՝ հողմակոծ՝ սառնուտ՝ և սա կաւիկ անձրեւային. գարունն հո սէ. ամառն գէջ. աշունն չոր՝ և հով. Բազմատեսակ ամռուանուէ անկումն հին տանց. երեքօրեայ՝ և չորեքօրեայ տենդ. մահ ծե րոց՝ անկելոյ՝ ոչխարաց՝ և այլը շմագործ որդանց. յ'Երեւակին իշխանութեւմբ ծնեալն լինի սեւա մաղձեայ՝ Թխադէմ, մեծակզակ՝ մազոտ՝ հաստապառունգ՝ ջլոտ՝ և նեղանկուրծ։ Բարաւքն՝ ագահ՝

խոր

կարմրաշաղն՝ հրատին• գեղնա
գոյնն՝ լուսաբերին• գոյնզգոյնն
զարարս փայլածուին ունի:

Խնամոցումն աստեղաց 'ի հողային
կենդանակերպսն• զստերջութիւն
բերէ՝ և ցամաքութիւն• 'ի ջրոյ
ինս՝ խոնաւութիւն և զմահ• յ'օ
դոյինս՝ զհողմն՝ փեռեկտումն՝ և
զժանտ• 'ի հրայինս՝ հրդեհումն
տապ՝ մահ՝ և սպատերազմ:

Գուշակումն գիսաւոր աստեղացն:

Գիսաւոր աստեղաձևքն՝ և
տրտնաւորքն՝ նախ պատճառեն զ
ժանտամահ• զի ապականեն զեր
և զբեր հողոյն• ուստի սով՝ հե
տևապէս ժանտ մահու:

Պատճառեն ևս զազմուկ՝ զապրս
տամբութիւն և կռիւ• քանզի ու
նին զարարս ռազմասէր հրատին
երկդէմ փայլածուին, և մարդա
տեաց երևակին:

Պատճառեն ևս զիշխանաց՝ և մե
ծամեծաց մահս• քանզի գրգա
մարմինքն՝ և փափկաբունքն յ'ա
պականեալ օդոյն դիւրաւ սահին:

Պատ

Ապաճառեն ևս յեղափոխութի օրինաց՝ կարգաց և իշխանութեց. զի յետ ռազմահարութե՝ փոփոխին իշխանք՝ և թագաւորք, զորոց տեղիս կալնուն յաղթօղքն և փոփոխեն զօրէնս՝ և զիրաւունս, Երբեմն՝ և զկրօնս:

Գլուխ Չորրորդ:

Գուշակութիւն զաւ'ի հողմոց՝ անձրևաց՝ և այլ զբօսանացն

Ի մասնաւորաց Ռուած է.

ՈՉ ԳԻՈՅ ՋՄՐԻՈԻՆՒՐ ՈԻՐՆՅ ՀՈԳ ՄՐՈՅ·ՈՉ ՈԻՐ.ՕՄՐ, ՐՈԻՐՆՅ ՎՐ ՆՐՆՅ:

Հողմ ուր կամի՝ շնչէ, և զձայն նորա լսես. այլ՝ ոչ գիտես, ուստի գայ՝ կամ յո երթայ:

Պատգամ Աստուածայինն է: Յօհ. 3. 8:

ԻՐ.յց՝ ըստ 'ի վերուստ առ'ի Հօրէն Լուսոյ իջեալ պարգեացն՝ դոյնինչ գիտութի եղական գոյից ունիլ բաւականանամք.

Գւար

Պ. արծցուք յ'առաջակայն մեր.

Գ. խաւլի ուրեմն է։

Հիւսիսային հողմն է ցուրտ, և չոր. պարզէ՝ առողջարար՝ երծանելեաց պաշտպան. բայց վնասաբար ծաղկանց՝ նորատունկ որթոց՝ և մատաղ տնկոց. ՚ի պատճառէ սաստիկ ցրտութեանն։

Հարաւայինն՝ ջերմ, և խոնաւ. տօթահար՝ ժանդաբեր՝ լուսաղօտ՝ գլխամլիշտ՝ վեհերոտ՝ կամ դանդաղկոտ. պատճառ փտութեան տենդի, կշտացաւութեան՝ և թոքի ուռուցման։

Արևմտեանն՝ տամուկ, և բարեխառնորէն ջրային. անձրևածին և որոտաբեր. ուրեքուրեք յ'ամառն զօդն պարզէ, ՚ի գարնան՝ և ՚ի ձմեռուան եղանակին զանձրև՝ կամ զձիւն բերէ։

Արևելեանն է բարեխառնօրէն ջերմ, և չոր. առողջ՝ թշնամի փըտուն ժանդի՝ մարմնապաշտպան. ձմեռնայինն ցրտագոյն և սառնածին լինի. փչէ յ'արևագալին, և գիշերոյն յաւէտ դադարի։

Հողմն

Հողմն տարեկան, կամ յարամեայ (որ յ'այսմ, և յ'այնմ ժամու տարւոյն հանապազ փչէ:) երկղիմի է. ամառնային, և ձմեռնային:

Ամառնային տարեկան հողմն ըսկսանի փչել՝ ութօրեայ յառաջ քան զելն Շնիկ աստեղն. և մնայ 40 օր, բայց՝ գիշերայն լռէ.

Իսկ ձմեռնայինն՝ հակառակ ամառնայնոյն հակիկայ ժամանակի շնչէ:

Երևակն շարժէ զարևելեան հողմն. լուսընթագն՝ զհիւսիսայինն. հրատն՝ զարևմտեանն, և զհարաւայինն. լուսաբերն՝ ըզ միջօրեայն. փայլածուն՝ ըստ որում է ումեք ընկերանայ. արեգակն՝ և լուսինն շարժեն զարևմտեան հողմն:

Յորժամ լուսինն է 'ի մէջ խոյոյն՝ առիւծոյն և աղեղնաւորին. փչէ 'ի մէջ արևմտից՝ և հիւսիսոյ: Երբ 'ի մէջ ցլոյն՝ կուսին՝ և այծեղջեր. յ'արևելից՝ և 'ի հարաւոյ միջէն հոսէ: յ'Երկաւորի՝ կշռոյ՝ և 'ի ջրհոսի մէջն յ'արևելից՝ և 'ի հիւսիսոյ միջէն հնչէ: 'Ի խեցգետնի՝ կարըճի՝ և 'ի ձկան մէջն. փըչէ 'ի հարաւոյ՝ և յ'արևմտից միջէն:

## Նշանք հողմոց:

### յ'Երկնից:

Ամպ շառագունեալ 'ի հիւսիսոյ՝ կամ 'ի հարաւոյ յ'արևագալի ժամուն

մաւն. Կ՛նչան հողմահասութեան։
Մ՛ուտ շառաւղունել Մ՛արեւական. կարմրացայտ ամպ յետ արեւմտին. եւ՝ զկնի յորդ անձրեւաց. հողմ։
Լուսինն կարմրացեալ՝ կամ ըստուերաւ բծաւորեալ. հողմ, եւ անձրեւ։ Թէ 'ի ջինջ արեւադալն ամպ երեւի. կամ յ՚առաւօտն որոտայ, հողմն հասէ։
Թէ հարաւային ծայր՝ կամ եզջիւր լուսնոյն իջէ սուր՝ հարաւ հոսէ. եթէ հիւսիսայինն՝ հիւսիս փչէ. իսկ թէ՝ երկաքանչիւր լուսնոյ ծայրն իջէ սուր, հողմակոծ գիշեր հետեւի։ Ո՛ր կոյս գիշերն սաստ ինչ ցոլանայ, անտի փչէ։
'Ի ծննդեան լուսնոյն եթէ հոսիցէ մինչեւ յ՚երրորդ օրն, հոսեսցէ գրեթէ մինչեւ 'ի լրումն։
Մ՛տեալ Մ՛արեւական 'ի ձմեռնային կենդանակերպսն՝ եթէ երկինքն որոտան, տարին լինի հողմակոծ։
Մ՛մառան յաճախ որոտն՝ քանզ փայլատակն զհողմն գուշակէ։
Յ՛որժամ հարաւ փչէ, ոչ է՛ սերմանելի, եւ ոչ հերկելի։

Նշանք 'ի կենդանեաց։

Թէ

Թէ բադք յաճախ 'ի ջուրս դողին հոսեսցէ։ Սագք եթէ 'ի հիւսիս թռչին՝ փչէ հարաւ. իսկ եթէ 'ի հարաւ՝ հոսէ հիւսիս։

Մրջիւնք երբ ոչ աշխատին, այլ դողին 'ի բունս. և՝ հաւք ընտանիք եթէ մերձ ջրոց թռչոտին, կամ սաւառնին. նշանէ հողմոց։

## Նշանք անձրևաց։

'ի Լուսաճեմ Արեգէն։

Ցերեկեայ անձրևքն յ'Արևագալէն. և ց'այգեայն՝ յ'արևմտեն գուշակին։

Արեգակն երկաթագոյն ամպով ելեալ՝ եթէ զշառաւիղս իւր ձգէ 'ի հարաւ՝ և 'ի հիւսիս. հոսէ, և անձրևէ։

Ամպ կապտագոյն՝ խառնեալ՝ և մրթնաշորթ յ'արևելս, կամ յ'արևմուտս. պայծառատեսիլ արեգակն յ'արևելս՝ կամ 'ի մուտս. շառաւիղք արեգական յ'ելն՝ կամ 'ի մուտն ծածկեցեալք յ'ամպոց. եթէ իբր հրացեալ գունտ երևի արեգակն. եթէ իբր Ը վանդակապատ ցուցէ արեգակն զիւր

շա

շառաւիղին. գուշակին անձրևք ։

Ի Յարափոփոխս Լուսնոյն ։

Եղջիւր լուսնոյն բծաւոր յառաջ քան զլրումն. անձրևէ ։

Լրացեալ լուսնոյ մէջն բծաւոր. պարզ օդ ։ Եթէ նոր լուսինն ունիցի զծայրս վերին կողմն մութն յետ լրմանն. թէ զներքին կողմն՝ յառաջ քան զլրումն. և երբ մէջ լուսնոյն երևի մութն՝ մերձ լրմանն հետևի անձրև ։

Յետ երիցաւուրց՝ եթէ նոր լուսինն ոչ երևի, և շնչիցէ հարաւ. բոլոր լուսինն լինի ձմեռնային ։ Եւ որ լուսինն յ՚ամենուստեքէ և ացեալ՝ սաստիկ ալէտանջութի ։ Եթէ յ՚երրորդաւուր լուսնոյն՝ ծայր եղջերն իցէ շլագոյն, որ է արձրձագոյն՝ և մեռելագոյն. երկար անձրև ։

Երկին վաղորդեայն շառագունեալ՝ մրրկի. յ՚երեկոյի կարմրացեալն՝ պարզի ։

Լուսինն մեռելագոյն՝ կամ շլագոյն, զանձրև. շառագոյնն, զհողմ. սպիտակագոյնն՝ զպարզութիւն գուշակէ ։

Ե.

Ատեան յԱստեղաբանից առէ
Շ լագոյն լուսինն անձրևէ.
կարմրացեալն՝ փչէ.
սպիտակն՝ պարզէ:

ԱՅԼ Նշանք անձրևաց:

ԱՄՊՆ, եթէ հարաւոյ 'ի հիւսիսոյ չուէ, և՝ թէ 'ի վեր ելանէ, անձրև. իսկ թէ՝ 'ի վայր իջանէ, կամ սփռի, և ցրի, օդն պարզէ:
Ձմեռուան որոտն, և ամառուան վաղորդեայն, կամ երեկոյեան ո-րոտալն՝ զանձրև բերէ:
Աշնան յաճախ փայլատակելն 'ի հիւսիսոյ, զանձրև բերէ:
Եթէ 'ի ջինջ հարաւոյ ստէպա-տէպ փայլատակէ, հետևեալ օրն անձրևեսցէ:
Փայլատակելն առանց որոտման, երբ օդն է պղտորուն՝ անձրևէ:
Ծիածանն՝ կամ աղեղն օդոյն դէպ 'ի հարաւ ձգտեալ. ևս՝ թէ յարևմտից աղեղն յարևելս ե-րևի. նշան է անձրևի:

Նշանք 'ի Կենդանեաց:

Պորտունք փոյթ ընդ փոյթ բղկբղ-կան: Աքաղաղն զկնի թաթաւամբ

տին

ախն խօսի: Հաւք յաճախ թա-ւալին՝ և զինքեանս քթթեն. և ս-կանուխ 'ի բոյնս երթան, և անա-գան յ'արօտ ելանեն յ'առաւօտն: Ծիծեռունքն սաւառնեալ մերձ ջրոց, կամ հուպ ընդ հուպ որմոց և զետնոյն թռչտանեն: Ճընճղուկք վաղքայն ճընկճընկան: Ճանճք, և լուք խիստ քան զըն-դածին բարս իւրեանց խայթեն. Մեղուք 'ի մեղուոցէն ոչ հեռա-նան: Սզինք՝ բարձրացուցեալ գլխոյ, հոտոտեն զօդն: Գայլք ուրոյն ուրոյն մերձենալով 'ի շի-նութիւնս վայեն:

Եւ այլ բազում սոցին նմանաւորս նշանք են ձմեռայ:

## ՆՇԱՆՔ ՈՐՈՏՄԱՆ:

Ր. Րեգակն եթէ վաղորդեայն՝ և յ'երեկոյի ամպաստ հանդերձ տապախառն ծովէ երևի, և այս 'ի գարնան՝ և յ'աշնան եղանակին կամ յ'սկզբանն ամառան. զորոտ և զփայլատակ բերէ: Նոյնպէս Յարդ ը ածաղս հողմակոծեալ: Սեաւ ամպն առաւելորոտայ. ա

ռաւ

ռաւելագոյն, եթէ 'ի սևոյն շա-
ռադունի. ևս առաւել սաստիկ,
երբ ամպն շառագունի կանաչու-
թեամբ հանդերձ: Սպիտակագոյն
ամպն է անվտանգ:

ԱԶԴԱՐԱՐՈՒԹԻՒՆ:

ԵՐԵՆԵՑՆ այսպիսի՝ և
սոցինանմանն գուշակելիք պատճառ-
ուին յ'ասուեղաց յ'այնմ վայրի և
տեղւոջ միայն, ուր աստեղունքն
ծագեն, կամ խոնարհին 'ի մի՝ և
'ի նոյն Երկնահայեաց շրջանակի,
որ ձկտի քառակուսօրէն 'ի ծայրա-
ծաւալ դաշտի ցը'այն վայր, յո
տեսութիւն աչաց հազիւ հասանի,
այսինքն՝ տասն և վեց մղոնս:

Երկին:

ՕԴՈՅ խառնուածն կարող
է երբեմն զգուշակելին յեղաշր-
ջել՝ և փոփոխել: Քանզի՝ թէ
գուշակիցի անձրև, և օդն իցէ քա-
րեխառն, անձրևէ. եթէ ցուրտ՝
ձիւնէ, կամ կարկտէ. իսկ եթէ՝
գաղջ՝ ցօղէ, կամ մառախլապատի:

Զգուշութիւն:

Միրք

Մ՛ի ոք տատանօր անհրահանգ՝ և անկիրթ զայսպիսի գուշակելիս դժուարաձեռն, և դժուարահաս իրողութիս համարելով՝ յաւակնեալ՝ նախատիցէ զմեզ։ Ա. անզի՝ Որք միանգամ ( ըստ որում քաջ՝ և անյաղթ Փիլոսոփոսն Դաւիթ արձանագրէ։ ) Իմաստասիրութե տենչան բանից, և առ՚ինմանէն հեշտութենէ ծայրիւ միայն մատին հանդիպլին ճաշակեալք, ամ կենցաղական հոգոց բարեաւ մընալ աստցեալք, իմաստուն տենչմամբ, բազում յօժարութե, և ողջախոհ իմն մոլութե առ յ՚այսպիսի հանդէս վարեալք եերին։ Այսպիսի հարազատք՝ և Օւաակք Ա. նութե գերազանցագոյնս ես ( աներկբայաբար ասեմ. ) կարեն իմանալ՝ ք զոր գրեմս։





# Կարգ իմաստասիրութե։

## ՆԱԽԵՐԳԱՆՔ։

Ի իմաստասիրութի է ջան իմաստութեան։
Ի իմաստութի է գիտութի ը̅ հանուր գոյից։
Ընդհանուր գոյք են ըստ կարգին։
Կարգն է՛ըստ առաջնոյն, և յետնոյն։
Դի միայն կայ է ԿԱՐԳՆ (ասէ Աստուածաբանն.) և լուծանէ անկարգութիւնն։

Արդ՝ դու համբակ, և արբուն մանկունք. եթէ կամ էքեզ ը̅ ամենայնի, և ը̅ ամս արբանել՝ արբնաթևել՝ խելամուտ լինել՝ և քաջատոհմիլ. արի՛ ըղձմուութ̅. Էկ զկնի իմ կամակար մտօք. ունկնդիր անձանձիր. գիտեա՛ լուելեայն՝ զոր ուսանեսդ, և լուս։

Սքանչելի եղև (ասէ Ա՟ծային քնարերգն) գիտութիւն քո յ'ինէն։ Փսաղմ. 138. 5։

## Ուրեմն

յ'Աստուծոյ երկնիր։
յ'Աներկրուղիցն փախիր։
Զքեզ ինքնին ծանիր։

Այպյ ընդ մարգարէին ոչանչանտ, Թէ՝ որպէս՝ ճանաչեալ միկրոկօզմօսին, և փոքր աշխարհին, դիւրաւ քաճիցես իմաստնօրէն ճանաչել զմեծաշխարհն։

Եւ փոքրաշխարհի բնական ծանօթութին
տայցեալ լինի ներկնա
պէս միայն մի՝
նորդուք
արտաքին, և ներքին
զգայարանաց
մարդոյն։





# ԱՄԵՆԱՅՆ ԲՆԱԿԱՆ ԳԻՏՈՒԹԻՒՆ

օժանդակութեամբ զգայարանացն սկզբնաւորի յ'ի՛մացողութենէն :

Վասնզի՝ ոչինչ է յ'իմացողութե՛ որ չիցէ նախ եղեալ յ'ըզգայութե՛ . Պատուելին 'ի մէջ զգայարանացն է տեսարանն . ապայ է լսարանն . Հուսկ յետոյ մնացեն զգայարանքն :

Իցէ ուրեմն տեսարանն կրթեալ յ'առաջիկ դեալս իւր . որ 'ի զանազան գոյնս՝ և 'ի լոյս : Լսարանն ( որ 'ի մարմնեղէնսն՝ ըստ բաղկացութե՛ , և 'ի հոգեղէնսն՝ ըստ բաղդատութեան՝ և համեմատութեան զհամաձայնութիւնս յօրինէ . ) իցէ վարժեալ յ'այլևայլ հնչիւնս՝ բամբիւնս՝ և 'ի ձայնս :

Հոտոտարանն՝ 'ի հոտս :

Ճաշակարանն՝ 'ի համս :

Շօշափարանն՝ յ'առաջին շօշափելի որակութիւնս . Նաև՝ յ'երկրորդսն , որք են նօսրութի , և խտութի . թեթևութիւն՝ և ծանրութի . կակղութի , և կարծրութի . ողորկութիւն՝ և խոշորութիւն . սողոսկութիւն և կպչոտութի . փշրութի , և ցամաքութի : Իցեն և զգայարանքն հմտացեալք 'ի հասարակ՝ և միջացեալ յ'առաջադրեալսն , որք են՝

մեծութիւն, շարժութիւն, ձև, թիւ, և հանգիստ. Այս արտաքին զգայարանքն։

Նոյնպէս՝ և ներքին զգայարանքն իցեն կր թեցեալք յառաջեդեալսն իւրեանց։

Հասարակ զգայութիւնն է յառաջկոյս խելապատակին. երևակայութիւն՝ յարգանդի, և ՚ի միջին փորուածի խելապատակին. իսկ յիշողութիւնն՝ յետևկոյս կողմանէ խելապատակին։

Դարձեալ՝ գիտելի է. զի եռակի են գոյք. ք՝ ենթակայութք, և մակամնածութք նիւթաւորք, որպէս՝ փայտ, քար՝ և այլ. ենթակայութեամբ՝ և մակամնածութեամբ աննիւթք, որպէս՝ Ա՛ծ, հրեշտակք և այլ. ենթակայութք նիւթաւորք, իսկ՝ մակամնածութք աննիւթք. քանզի կարէ ոք որ պաճորել զձևս, և երևակայել զպատկերս յիւրում տրամախոհութեանն։

**Ի յորոցին այսպէս եղելոց՝ ասեմք**

Նախ՝ ՅԱՌԱՋԵԴԵԱԼ ԱՌԱՐԿԱՅՆ շարժէ զզգայութիւնն. ով՝ գեղեցկութիւնն շարժէ զտեսութիւնն, հնչիւն՝ զլուրն, քաղցրութիւն զճաշակն, հոտ՝ զհոտոտարանն, կակղութի կամ կարծրութիւն՝ զշօշափելիսն։

Երկրորդ՝ ՀԱՍԱՐԱԿ ԶԳԱՅՈՒԹԻՒՆՆ ընդունի ՚ի տուն իւր զըմատուցեալսն յարտաքին զգայութեանց, և զընկալեալսն քննելովն դատէ։

Երրորդ՝ ԵՐԵՒԱԿԱՅՈՒԹԻՒՆՆ զգալեն իրացն պատկերս դրոշմէ, և երևակայելովն վերստեղծէ։

Չորրորդ՝ ՅԻՇՈՂՈՒԹԻՒՆՆ իբր զհաւատարիմ գանձապետ՝ ընկալեալ զկերպարանեալ պատկերսն, դնէ ՚ի պահեստի։

Հինգ

ենթակայ արարողական զօրութիւն մտացն. իսկ՝ ըստ որում իմացեալ բնութիւն է, առ կրողականին ենթակայ. բայց՝ երբ արարողականն ընդ կրողականին լծի, առ ստացեալ

## ԻՄԱՑՈՒԱԾ:

## ՌԱՍՏԻՃԱՌՆԲ ՆԻ ԳՈՐԾՈՂՈՒԹիւնք

բանական՝ գիտնական՝ և իմացողական զօրութեանն երեք համարին. սակ մտաւորութին, դատողութին, և համաքաբանութին:

ՍՈւկ մտաւորութին է ըմբռնումն ծանուցելւոյ ենթակայական պատկերացն, և ներտրամադրեալ սահմանացն. զոր՝ որպէս բանական կրող զօրութիւնն ընդունի, ընդ այնմ և արարողականն ընձեռնէ՝ և ըմբռնէ:

ԴԱՏողութիւն է ծանուցեալ՝ և մտաւոր պատկերացն ստորասութին, կամ բացասութին:

ՀԱմաքաբանութիւնն 'ի ծանուցեալ՝ մտաւորեալ՝ և դատեցեալ պատկերացն զանծանօթ իմն վերաբերէ, և բանաւորէ. եթէ վերլուծականօրէն, և թէ շարամանօրէն:

ՎԵրլուծական համաքաբանութեբն զընդհանուր աստիճանն իւրաքանչիւր գոյից վերատին լուծանեմք. իսկ՝ շարամանական համաքաբանութեամբն զիւրաքանչիւր բնութե ընդհանուր վերլուծեալ աստիճանն կըցորդեմք առ 'ի ճշմարտել՝ կամ առել զառաջարկութիւնն մեր:

Վերլուծականութեամբն վերուստ 'ի վայր իջանեմք՝ ընդ բնութեան աստիճանն լուծանելով. իսկ՝ շարամանականութեամբն՝ վայրուստ 'ի վեր ելանեմք, շարամանելով

զընդ

Երկրորդ ինններեակն է աստիճան ընդհանուր բնութեան՝ և ենթակայ համայն առարկութեանց։

1․ Ած։ 2․ Հրեշտակ։ 3․ Երկինք։
4․ Տարերք։ 5․ Մարդ։ 6․ Կենդանի։
7․ Բոյս։ 8․ Հանք։ 9․ Ստորոգուծքն։

Երրորդ ինններեակն՝ են ընդհանուր գերըզանցութիւնք, ընդարձակութիւնք, և միջեզերք ամենայն առարկութեանց։

1․ Բարի։ 2․ Մեծ։ 3․ Մնացական։
4․ Կարող։ 5․ Գէտ։ 6․ Յօժար։
7․ Հզօր։ 8․ Ճշմարիտ։ 9․ Փառահեղ։

Չորրորդ ինններեակն է առընչութիւն, հայեցուած, և ստորոգելիք ամենայն առարկութեանց։

1․ Տարբեր։ 2․ Համաձայն։ 3 Տարաձայն։
4․ Սկիզբն։ 5․ Մէջ։ 6․ Վերջ։
7․ Առաւել։ 8․ Հաւասար։ 9․ Նուազ։

Այս թեթև լոմնայաստրաս առաքոնս, և առհամառօտելոյս իցէ իրթան․ որով յ'այլում, և 'ի դիպող ժամանակի մտրսկեցայց 'ի կատարեալ արտադրութի այսր մեծի գանձու գիտութեանս։

---

'Ի Մխտար և զայս դլխաւոր եղանակս համաքաբանելոյ․ զորոց 'ի

Տրա

Տրամաբանական դատաստացութեն մի ըստ միոջէ, և լիօրէն արտադրի:

Տրամաբան . բէթմոյէլ . տարէլի . տէրիմօն՝
Դի էմոդէմ . տըէչէ . զէֆիրօն . սոլօմօն .
Քաղաքի . Թէատրօն . Ծիրանի . մոյիսի . մօ֊
նակրօն . սէնիօ :

Ց՚այս խորթաշար բառս՝ ակնարկելիք են միայն նախադիր ձայնաւորքն . քանզի՝ սա Ա . Ընդհանուր . Ի . մասնաւոր իքնչէ : Իսկ՝ Ե . զընհանուր . Օ . մասնաւոր չէք :

## Վեց յարացոյց:

Տրա Ամենայն գովելի գովասանաց է արժանի, և անարժան պարսաւանաց . (որպէս՝ ամենայն պարսաւելի գովասանաց է անարժան, և արժանի պարսաւանաց :)

մօ Բայց՝ ամէն բարութիւն է գովելի . (այլ և ամէն չարութեն պարսաւելի :)

բան . Ուրեմն՝ ամենայն բարութիւն գովասանաց է արժանի, և անարժան պարսաւանաց . (այլ՝ և ամէն չարութեն գովասանաց է անարժան, և արժանի պարսաւանաց :) Մ. ի սո Նո:

Բէթ֊ Ոչինչ գիտութեն է ատելի գիտնոց՝ և սիրելի տգիտաց . (այլ՝ ոչինչ յի մարութիւն է ատելի տգիտաց, և սի րելի գիտնոց :)

մոյ֊ Բայց՝ ամէն ուսումնասիրութեն է գի տութիւն . (այլ՝ և ամէն ուսումնատե ցութիւն է յիմարութիւն :)

էլ . Ուրեմն՝ ոչինչ ուսումնասիրութիւն է ատելի գիտնոց, և սիրելի տգիտաց . (այլ՝ և ոչինչ ուսումնատեցութեն է ատե լի տգիտաց, և սիրելի գիտնոց :)

Նայսու

Ա․ Յաւիտեան՝ գոհեալ լիցի զանազան այսր գործակի. եղիցի ամենաբարութեան, ամենակալութեան, ամէն իմաստութեան, ամենազօրութեան, անբովանդակութեան, անշուշտ ճշմարտութեան, անեզր երանութեան, մշտնջենաւորութեան, և ինքնակամութեան Աստուծոյ (Ա՚ծոյ) գոհութիւն ՚ի Շնչաւորաց. օրհնութիւն ՚ի ԺԸ Զգայականաց, և պատիւ ՚ի Բանականաց. փառաբանութիւն ՚ի բարձունս երկնի, իշխանութիւն ՚ի ստորևս երկրի, և շնորհակալութիւն ՚ի բնակչաց երկրաքանչիւրոյն յ՚երկիս, և յ՚անվախճան յաւիտեանս յաւիտենից ամէն, ամէն և ս ։



ՎԵՐՋ։

Ձ. Ա. Նիւ հայցես ասէ չնոր հաց.

Մ՛է ծոյլ կենաց, և գեղէ բած ։

Մ՛է օիրբեր քուն զամօրջասքու նաց.

Մ՛է արթնութեան լուսաւոր նաց ։











